# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ։

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15։ ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015. Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 5 • 87



Հանձնված է արտադրության 26.II.1987 թ.։ Ստորագրված է տպագրության 14.IV.1987 թ.։ ՎՖ 05614։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 67032։ Պատվեր՝ 544 Գինը՝ 15 կոպ.։

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 26.02.87 г. Подписано к печати 14.04.87 г. Формат 70×100 1/16. ВФ 05614. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 67032. Заказ 544. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

< Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

ԿՈՆՍՏԱՆԴԻՆ ՊԱՈՒՍՏՈՎՍԿԻ

# Փոքրիկ նախրապանը

Թարգմանեց ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԸ

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ցողն իսկական սեպտեմբերյան էր. սառն ու առատ։ Բարձր խոտերից ցայտում էր դեմքին, ծառերից կաթում գետի մեջ, և մուգ ջրի երեսին դանդաղ շրջագծեր էին տարածվում։

Ես ամբողջովին թրջվեցի ցողից և խարույկ վառեցի։ Ծուխը բարձրանում էր մինչև եղևնիների ու սոճիների կատարները։ Դրանք արդեն տերևաթափ էին եղել։ Նրանց փուշ-տերևները, ոսկեղեն կարճ մազերի պես բարակ, շարունակ թափվում էին վերևից, թեև քամի չկար։ Խարույկի մոտ, սոճու վրա, ինչ-որ մի թռչնակ էր ճռվողում։ Թվում էր, թե այդ թռչունը անտառի վարպետն է և որ նա է խուզում փուշ-տերևները, չխկացնում մկրատը, փշերը թափում ցած՝ իմ գլխին, գետին, խարույկին։

Ես չորանում էի ու նայում գետին։ Դեղին տերևները կղզիներ կազմած, լողում էին, կառչում տապալված ճյուղավոր բների, կանգ առնում։ Սրանց ետևից տերևների նոր կույտեր էին վրա հասնում։ Դրանք մի պահ դանդաղեցնում էին գետի ընթացքը, պտտվելով դուրս պրծնում ճյուղերի կառչուն թաթերից, պոկվում ու լողալով հեռանում՝ մեկ ոսկու պես վառվռելով, երբ արևի տակ էին ընկնում, մեկ մարելով ու սևանալով, երբ նրանց վրա թփուտների ստվերն էր ընկնում։

Գետի վրա գերմանացիների դեմ մղված մարտերի ժամանակներից գետանցներ էին մնացել. խոտաբույսերով ծածկված լաստեր ու ծանծաղուտներում դեմ առած առանձին գերաններ, որոնց



շուրջը փրփրում էր ջուրը:

Խարույկի սոտի թփուտները ճտճտացին: Նրանց միջից կովի թաց մռութ դուրս պրծավ: Կովը հոտոտեց օդը, աղմուկով շունչ առավ և սև, բծավոր ճակատով ու սպիտակ գլխով ինձ ողջունեց: Մոտերքում կրակոցի պես խկույն շրխկաց մտրակն, ու մեկը բղավեց.

— Էդ ո՞ւր, Պարասկա: Ո՞ւր մտար, գիժ:

Պարասկան մի կողմ նետվեց և, թըփուտները ջարդելով, անհետացավ: Թըփուտներից դուրս եկավ մի փոքրիկ նախրապան կամ նախրապանի սովորական օգնական, որի նմաններին մեր կողմերում կարելի է տեսնել՝ պստիկ, չափազանց շիկամազ, մեծ գդակով, բամբակակար պատռված բաճկոնով և երկար մտրակով: Մտրակը նա թաց խոտի վրայով քարշ էր տալիս իր ետևից:

Նախրապանը քիթը վեր քաշեց, սըրբեց մինչև գետին կախված թևքով, ինձ նայեց ու խռպոտ ձայնով ասաց.

— Հարգանքներս: Ցողն ուղղակի ծով է կապել: Դիմանալու հնար չկա:

— Եկ՛ չորացիր,— առաջարկեցի ես:

— Կարելի է, ինչո՞ւ չէ,— համաձայնեց փոքրիկ նախրապանը, մոտեցավ ու խարույկի մոտ պպզեց:— Դուք ի՞նչ է, ճանապարհո՞րդ եք:

— Թերևս, ճանապարհորդ եմ,— պատասխանեցի ես:

— Իսկ ես նախրապան եմ,— ասաց տղեկը:— Ալեքսեյ Կուդիշկին: Հորս տեղըն եմ աշխատում: Նա ռազմաճակատում է: Ճիշտ է, ես ամեն կերպ աշխատում էի ձիապան դառնալ, բայց նախագահը չվերցրեց: Ասում է. չափապակաս ես, բոյ չունես: Լյոնկային նշանակեց: Իսկ Լյոնկան ի՞նչ ձիապան է որ: Ես նըրան միանգամից գետնով կտամ, եթե լուրջ կռվի բռնվենք: Բոյով է, բայց հեչ ուժ չունի: Որովհետև մարդու ամբողջ ուժը ուսերում է, իսկ նրա ուսերը՝ նեղ, ոնց որ այծի ուսեր լինեն:

Տղան լռեց, հետո անսպասելի հարցրեց.

— Դուք Միսսիսիպի գետը տեսե՞լ եք: Ամերիկայում:

— Ոչ, չեմ տեսել: Ի՞նչ կա որ:

— Երազում եմ տեսնել: Ասում են՝ լայն

է, Վոլգայից էլ լայն: Իսկ Ստալինգրադում եղե՞լ եք:
— Եղել եմ:
Տղան ժպտաց.
— Հայրիկս Ստալինգրադի համար համ վերք է ստացել, համ էլ մեդալ: Պատերազմից առաջ նա մեր գյուղի նախագահն էր:
— Միսսիսիպիի մասին որտեղի՞ց գիտես,— հարցրի ես:
— Դպրոցից: Եվ հայրիկիցս: Նա ամեն բան գիտեր, ամեն խոտ ճանաչում էր. անունն ինչ է, որտեղ է աճում և ինչ օգուտ կա դրանից կամ ինչ վնաս, ամեն բան կբացատրեր: Թե մեր երկրի, թե՛ մյուս երկրների մասին: Ճի՞շտ է, որ ալմաստե սարեր կան, բայց շատ խոր, հողի մեջ են թաղվել, և նրանց հանելու համար հարյուր տարի պետք է մեքենաներով փորել:
— Չգիտեմ,— պատասխանեցի ես:— Ինչ-որ չեմ լսել այդ սարերի մասին:
— Իսկ հայրիկս լսել էր,— ասաց տղեկը:— Նա ճանապարհորդ չէր, բայց ճանապարհորդների մասին ամեն բան գիտեր: Իսկ շշերի մասին գիտե՞ք:
— Ի՞նչ շշեր:
— Փոստային:
— Ոչ, չգիտեմ:
— Հիմա ես ձեզ կբացատրեմ,— ասաց տղեկը:— Ճանապարհորդը, ուրեմն, ճանապարհորդում է նավով: Մեծ օվկիանոսով: Նավաստիներն, իհարկե, ապստամբում են: Նրանք չեն ուզում լողալ: Տանը կուշտ ուտելիք ունեն, վառարանն ամբողջ ձմեռ վառվում է, իրենց կովն ու բանջարանոցն ունեն, երեխաները-էլ կարող են հարևանի մոտ տամա խաղալու գնալ: Իսկ էնտեղ միայն շոգ է ու ջուր, ուրիշ ոչինչ չկա: Սրանք էլ ապըստամբել են, էդ ճանապարհորդին նավակ նստեցրել և օվկիանոսով մենմենակ բաց թողել: Իրենք էլ շրջում են առագաստներն ու տուն վերադառնում: Իսկ ճանապարհորդին օվկիանոսը մի անմարդաբնակ կղզի է նետում: Դուք անմարդաբնակ կղզի տեսե՞լ եք:
— Ոչ,— պատասխանեցի ես:
— Հենց մեր գետի վրա էդպիսի կղզիներ կան,— ասաց տղեկը. նրա աչքերը փայլում էին, դեմքը շիկնել էր հուզմունքից:— Մեկի վրա էլ սամույր է ապրում: Էնտեղ միայն արմավենիներ են ավլվում, թութակներ են թռչում ու կռռվում, և դեռ լավ է, եթե խմելու ջուր կա կղզում: Եվ նա մի շիշ է հանում նավակից, երկտող գրում, որ իրեն հենց էս կղզին է նետել ալիքը, շշի մեջ դնում, բերանը խցանում ու օվկիանոսն է գցում: Հոսանքը տանում է շիշը: Հետո, իհարկե, մի ուրիշ շոգենավի անձնակազմ գտնում է էդ շիշը ու ռադիոյով հայտնում, թե էս ճանապարհորդը շտապ օգնության կարիք ունի: Նրան փրկում են: Իսկ նավաստիներին հետո դատում են ծովային դատարանում:
— Ապստամբությա՞ն համար:
— Ապստամբության: Եվ անմարդկայնության:
— Այոշկա,— կանչեց հեռվից կնոջ զայրագին մի ձայն:— Ո՞ւր ես կորել: Պարապկան կաղամբի թմբերն է մտել:
— Էստեղ եմ,— բղավեց տղեկը:—Հիմա դուրս կքշեմ:
Նա վեր կացավ, իրար վրա քաշեց բաճկոնի փեշերը:
— Մի տեսեք ինչ չարն է,— ասաց նա:— Ամբողջ նախիրի հետ էնքան չես չարչարվի, ինչքան մենակ էս Պարապկայի: Դե, մնաք բարով:
Նա դեպի թփուտները վազեց: Հեռվից մտրակի շրխկոցներ, բղավոցներ՝ «էդ ո՞ւր, սատանա», և կովի դժգոհ բառաչներ լսվեցին:
Ես հանգցրի խարույկը և գետի հոսանքով ցած իջա: Յուրաքանչյուր քայլափոխիս գետն է՛լ ավելի առեղծվածային ու գեղատեսիլ էր թվում: Մեկ գահավեժ ափերին գորշ պատի պես կաղամախու ծանծաղ անտառ էր, և առանձին կաղամախիներից՝ դեղին գայլուկ կախված, կարծես մեկը արևի տակ չորացնելու նպատակով նրանց վրա նոր գործված-քներ էր փռել: Մեկ՝ գետի լայնքով, որպես կամուրջ, փչակներով առատ ուռենին էր ընկած, ու նրա մոտ լայնանկատ ծածաններ էին դուրս թռչում ջրից: Մեկ՝ գետը հանդիսավոր շրջադարձով անհետանում էր աշնան ոսկեզօծված ու կապտին տվող անտառներում:
Ափերի մոտ ջուրը մեկ հորդում էր լըվացված ավազների վրա, մեկ՝ խուլ ու խոր լճանում: Հորձանուտների եզրերին անորոշ երևում էին ջրում ընկղմված կաղնիները: Մի տեղ թփերից կարմըրին տվող սարալանջ բացվեց, իսկ թփերի մացառուտներում՝ ժանգոտած գմբեթով մի հին մատուռ:
Մայրամուտին ես ճամփա ընկա: Ճանապարհը, գետափով էր գնում: Գետի

վրա նորից խոտով ծածկված լաստեր հայտնվեցին: Հեռվից դրանք կղզիներ էին թվում: Արևը մայր էր մտնում, և լաստերից մեկը ինչ-որ չտեսնված փայլ էր արձակում: Ես սևեռուն նայում էի, բայց ոչ մի կերպ չէի կարողանում պարզել, թե ինչ է. պահածոյի տո՞ւփ, թե՞ ապակու կտոր:

Ափից՝ ափ նետած գերանի վրայով ես զգուշորեն հասա լաստին ու կռացա. գարեջրի սովորական շիշ էր: Պատատուկը մի քանի անգամ փաթաթվել էր բերանի շուրջ: Վերցրի և լույսին բռնած՝ նայեցի: Բերանը խցանված էր մոմով: Ներսում մի բան սպիտակին էր տալիս: Եռանկյունի ծալված նամակ էր:

Կոտրեցի շշի բերանը, նամակը հանեցի, բայց կարդալ չկարողացա. խոնավացել էր, իսկ մթնշաղն այնքան արագ էր խտանում, որ այլևս հնարավոր չէր ջոկել անհավասար տողերը: Ես պետք է շտապեի, որպեսզի մինչև մութն ընկնելը հասնեի երկաթուղուն: Մացառուտներից տերևների սառը հոտ էր փչում: Բացատներում դեռ անորոշ լույս էր սփռված: Բարձր երկնքում բոսորագույն վերջին բոցով այրվում էր ամպը:

Մոսկվա մեկնող գնացքը գիշերը եկավ: Ամայի անտառներից, սառը օդից ու մենությունից հետո ծխախոտի ծխով լի, աղմկոտ վագոնները արտակարգ հաճելի թվացին: Ես պառկեցի վերին մահճակալին, լապտերի մոտ, հանեցի նամակն ու կարդացի: Նամակը հին էր: Նշված թվականից դատելով, որը չգիտես ինչու հատկապես խոշոր տառերով էր գրված, նամակը մոտ երկու տարի մնացել էր շշում:

«Բարև հայրիկ: Սա նամակ է քեզ որդուցդ՝ Ալեքսեյ Կուդիշկինից: Մինչ դու կռվում ես ռազմաճակատում, մենք էլ վատ չենք ապրում ու սպասում ենք քո վերադարձին: Մայրիկը որպես նախրապան է աշխատում, իսկ ես նրան օգնում եմ: Բայց ես ձիապան եմ ուզում լինել: Որովհետև կովերին պետք է հետևես ու հետևես, իսկ դիտելու ոչ մի բան չունես: Ձիով ուր ուզես, կարող ես գնալ, իսկ կովերը միայն մի տրորված ճանապարհ ունեն. մինչև Այրված մարգագետինն ու Միտյայի անտառակը: Էնտեղ շատ բան չես տեսնի: Իսկ ես ամեն բան ուզում եմ կարգին տեսնեմ ու ամեն բան իմանամ: Մեր մոտից ես լաստով քեզ մոտ՝ Ստալինգրադ կգայի, բայց մայրիկը չի թողնի: Եվ, ասում են, առանց անցաթղթի ռազմաճակատ չի էլ կարելի: Դու ինձ վերցնեիր քեզ մոտ փամփուշտ բերելու կամ ռազմական գծով որևէ ուրիշ գործ անելու: Ես կկարողանայի: Իսկ դու, ինչքան էլ չլինի, էլի զանազան բաներ կըպատմեիր, եթե շունչ քաշելու րոպե ունենայիր: Էս նամակը, ճանապարհորդի պես, շշով եմ ուղարկում, որովհետև փոստով ուղարկելն ինձ համար հետաքրքիր չէ: Մեր գետը Վոլգան է թափվում, իսկ Վոլգայով շիշն անպայման տեղ կհասնի: Եվ եթե որևէ ական չպայթեցնի շիշը կամ շոգենավն իր անիվով չխփի նրան, մարտիկներից մեկը կգտնի, կկարդա հասցեն ու քեզ կհասցնի: Տղերքն ասում են, որ Ստալինգրադը քառասուն կիլոմետր է ձգվում և ամեն քայլափոխին մարտեր են մղվում: Շշով եմ ուղարկում նաև նրա համար, որ մայրիկը չկարդա, նա, պատահում է, որ լաց է լինում քեզ համար, և սոսկալի չի սիրում, երբ ես կամ տատը տեսնում ենք իր արտասուքը: Էդպես էլ իմացիր: Սպասում ենք քեզ ողջ և առողջ ու հիշում ենք ամեն օր: Սրանով մնամ քեզ սիրող որդիդ՝ Ալեքսեյ:

Պետկան, ջրաղացպանի որդին, արդեն օդաչու է: Ասում են՝ թռել է մեր գյուղի վրայով, թևերը թափ տվել, միայն թե ես չեմ տեսել: Կաղնու քոթուկի մոտ՝ հորձանուտում, սոսկալի շատ ձուկ կա, ուղղակի վխտում են, թփթփում են գիշեր-ցերեկ: Իսկ որսորդ Պոտապ պապի մոտից հիմար աղվեսը գիշերը բադի խրտվիլակը փախցրել է վանդակից. սըխալվել է: Պապը երկու օր շարունակ հայհոյում էր: Պատասխան գրիր ինձ»:

Մոսկվայում ես շատ դժվար կացության մեջ ընկա: Ի՞նչ անեմ այս նամակը: Ալյոշայի հոր հասցեն, իհարկե, արդեն փոխվել էր: Ալյոշային չվշտացնելու համար ստիպված եղա որոշ խաբեության դիմելու և նամակը նրան գյուղ ուղարկեցի մի հավելյալ գրությամբ. շիշը Կասպից ծովում նկատել ու նավեզր է հանել «Կրասնովոդսկ» շոգենավի անձնակազմը և այժմ ուղարկում է առաքողի հասցեով, քանի որ ռազմական գործողությունները Ստալինգրադի մոտ վաղուց ավարտվել են հաղթանակով, և հասցեատերը հետագա հաղթանակների համար դեպի Արևմուտք է մեկնել:

1944 թվ.



## Նաիրի Զարյան

1900—1969

### «Ձայն հայրենական»

(հատված պոեմից)

Հայոց քաջեր, մեր Սասնա տան սյուներ,
Հերոսության ու հանճարի այս մրցամարտերում
Հիշեք, որ մենք աղեղի պես լարված մկաններով՝
Ձեր վիպական կովին ենք հետևում:
Կովեք այնպես, որ սաղավարտը Վարդանի գետնով չտաք,
Որ ամպ չառնի իր ծեր գլխին Մասիսն ամոթապարտ,
Որ ժողովուրդների դեմքին նայեք միշտ համարձակ
Եվ ձեզանով հավերժորեն հպարտ:
Այնպես, որ ոչ այսօր,
Եվ ոչ գալիք հաշվեհարդարներին
Ոչ մի բերան չհանդգնի մեր դեմ ծամածռվել,
Որ մեր սրտի մեջ խոսի մինչև իսկ թշնամին,
«Ապրիր, գրողը քեզ տանի,
Որովհետև գիտես կովել»:

ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳՍՅԱՆ

# Վրեժ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Պարտիզանները մանչուկին գտան ցորենի հրդեհված արտում: Քնած էր, դեմքըն ամբողջովին կորած մրի մեջ: «Վեր կա՛ց, բալիկ»,— արթնացրեց նրան պարտիզանական պարեկը: Տղան աչքերը բացեց, և դեմքն ամբողջովին լուսավորվեց կապույտ լույսով: Մրոտ դեմքին աչքերն այնքան կապույտ ու մաքուր թվացին, որ ասես կապույտ ծաղիկներ բացվեցին ցորենի հրդեհված արտում:

— Ո՞վ ես դու, մանչո՛ւկ,— հարցրեց պարտիզաններից ավագը:

— Ես Ստյոպան եմ, Սոսնովկայից,— պատասխանեց տղան:

— Դու ինչպե՞ս հայտնվեցիր այստեղ, չէ՞ որ Լեսնոյ Բորը պարտիզանական տարածք է, քեզ չե՞ն հետևել...

— Իսկ դուք ովքե՞ր եք,— տղայի աչքերում կասկածանք նկատվեց: Նայում էր իրեն շրջապատող պարտիզաններին և երևում է՝ չէր կարողանում որոշել ո՛չ ասելիքը, ո՛չ անելիքը:— Մինչև չասեք, թե ովքեր եք, ես ձեզ ոչինչ չեմ ասի...

Տղան խռոված տեսք ուներ, շրթունքները ուռեցրել էր և հայացքը սրել շրջապատողների վրա:

— Օհո՛, վախեցնում ես, Ստյոպա, հայացքդ ածելու նման սրել ես,— ծիծաղում էին պարտիզանները,— զգույշ, մենք վախեցած մարդիկ ենք...

— Չե՞ք ուզում ասել, թե ովքեր եք, լա՛վ, ես ձեզ ցույց կտամ,— և հանկարծ հենց իր ոտքերի տակից, մոխիրների միջից չանթեց գերմանական ավտոմատը, իսկական խուճապ առաջացնելով պարտիզանների մեջ: Մի պահ ընկրկեցին և հետո պարզապես նետվեցին տղայի վրա ու թռցրին զենքը նրա ձեռքից:

Տղան ճչում էր, ճանկռոտում մարդկանց, կծոտում:

— Ա՛յ փոքրիկ, ինչո՞ւ ես գազազել, մենք պարտիզաններ ենք, հանգստացի՛ր...

Տղային տարան ջոկատի հրամանատարի մոտ: Քիչ անց, անտառի գետնատնակում, պարտիզանական ջոկատի հրամանատարի առջև կանգնած, առանց շփոթվելու և կմկմալու, նա պատմում էր ֆաշիստական զորքերի գազանային գործողությունների, անհաշիվ կախաղանների ու գնդակահարությունների մասին, որ նրանք կատարել էին Սոսնովկայում:

— Իսկ երբ նրանք գնդակահարեցին իմ պապիկին ու մայրիկին, ես որոշեցի թողնել գյուղն ու միանալ պարտիզաններին, որպեսզի վրեժս առնեմ այդ շներից,— տղան արդեն արտասվում էր, և արցունքները հոսում էին այտերն ի վար, ակոսելով նրա մրոտ դեմքը:

— Այդ ավտոմատն ինչպե՞ս փախցրիր,— հարցրեց հրամանատարը:

— Հարբած ֆաշիստը քնել էր մորաքույր Զոյայի բանջարանոցում, մոտեցա և պարզապես թռցրի...

— Այդ մեկը, Ստյոպա՛, ճիշտ չես արել,— ասաց հրամանատարը,— հիմա ավտոմատի համար պատասխան է տալու Զոյա մորաքույրը: Նրան ֆաշիստները կգնդակահարեն...

— Ֆաշիստները նրան, ընկեր հրամանատար, գնդակահարել էին երեկ, իմ պապիկի ու մայրիկի հետ միասին: Գյուղում մարդ չի մնացել...

Ստյոպան լռեց: Երևում էր այլևս չի կարողանում շարունակել խոսքը: Զոհված հարազատներին հիշելն իսկ ծանր վիշտ էր պատճառում նրան, արցունք քամում աչքերից, ինչը կորովի ջանքերով իզուր էր փորձում թաքցնել շրջապատողներից: Արցունքներն ասես ծլում էին աչքերից և ողողում դեմքը: Հրամանատարը գրկեց նրան:

— Իմացի՛ր, Ստյոպա՛, մեզ լավ հայտնի է գյուղում կատարվածը: Գերմանացիներին անպատիժ չենք թողնի: Մեր պարտիզանական ժողովրդական տրիբունալը որոշել է սովետական մարդկանց նկատմամբ անմարդկային հանցագործություններ կատարելու համար մահապատժի ենթարկել գերմանական կայազորի հրամանատար Ֆրանց Օրեյդերին: Լսո՞ւմ ես...

— Ես ուզում եմ լուծել պապիկիս ու մայրիկիս վրեժը...

— Իսկ դու քանի՞ տարեկան ես, Ստյոպա:

— Տասներեք, շուտով տասնչորս տարեկան կդառնամ, ընկեր հրամանատար... Կարող եմ մասնակցել հաուպտման Օրեյդերի մահապատժին...

— Չեղա՛վ, Ստյոպա, չեղա՛վ... Մենք

իրավունք չունենք անչափահասներին ուղարկել նման դժվարին առաջադրանքների: Տրիբունալի որոշումը կիրականացնեն փորձված պարտիզանները, նրանք էլ կլուծեն թե՛ քո, թե՛ իրենց վրեժը: Ե-ղա՞վ...

Ստյոպան չպատասխանեց: Դժգոհությունն ուղղակի թափվում էր դեմքից: Իրեն չէին ուզում մասնակից դարձնել ֆաշիստ մարդակերի մահապատժին, մինչդեռ այդ գործում ամենից շատ իրավունք ինքն ունի: Ինքը հիմա որբ է, բոլորովին որբ, էլ ոչ ոք չունի այս աշխարհում, միայն պարտիզաններն են մնացել հարազատ, նրանք էլ իրեն բանի տեղ չեն դնում. «Անչափահաս ես...»: Ինչո՞ւ է անչափահաս, ընդամենը հինգ տարի է մնացել իր զորակոչային տարիքին: Ի՞նչ մեծ բան է, վաղը, մյուս օրը ինքն էլ այդքան կլինի:

— Ի՞նչ է, դժգո՞հ ես, Ստյոպա՛...

Պատասխանի փոխարեն տղան հայացքը փախցրեց հրամանատարից, երեխայավարի ուռեցրեց շրթունքները, նրա նիհար ուսերը սկսեցին ցնցվել, սկզբում թույլ, հետո բարձրաձայն և խեղդող լացը եղավ պատասխանը հրամանատարի հարցման: Տղան լալիս էր, այլևս չտեսնելով իր շրջապատը, լալիս էր, ինչպես մոր առջև, քիթը վեր քաշելով, ոտքերը գետնին խփելով:

Հրամանատարը զգացվեց: Նա չգիտեր իր անելիքը, չգիտեր ասելիքը: Միայն Ստյոպային լսելի ձայնով կրկնում էր.

— Հանգստացիր, տղա՛ս, հանգստացիր, որդիս, մի բան կմտածենք, կտեսնես, որ ամեն ինչ լավ կլինի...

... Հետո Ստյոպային կերակրեցին, լողացրին պարտիզանական բաղնիքում: Նա երկար, շա՜տ երկար քնեց և երազում ժպտում էր. «Երևի կորցրած հարազատների հետ է, երևի մոր գրկումն է...»— նայելով քնած տղային, խորհում էր հրամանատարը:

Լուսադեմին ջոկատն իր մարտական կազմով շարժվեց դեպի Սոսնովկա: Քայլում էին անձայն ու աննկատելի: Անտառը կլանում էր ոտնաձայները և քողարկում մարտիկներին: Ստյոպան քայլում էր իր պարտիզան բարեկամների հետ և



տագնապում. հանկարծ չվրիպե՞ն, չը-փախչի՞ որիկան... Բայց ոչ, պարտիզանները չեն սխալվի, նման գազանների դեմ մարտնչելու մեծ փորձ ունեն: Վերջապես, ինքը հո ճանաչո՞ւմ է այդ որիկային, ինքը չի թողնի, որ իրենց գյուղը կործանողն ազատ շրջի ու չարագործություններ կատարի... Նա շոշափեց գոտկից կախված նռնակն ու փոքր-ինչ հանգստացավ: Ստյոպան աշխատում էր չհիշել մոր և պապի գնդակահարման տեսարանը: Երբեք չի մոռանա մոր հայացքը, որ ամեն օր արևի հետ արթնանում և ժպտում էր իրեն: Հիմա այդ հայացքն ուրիշ խորհուրդ ուներ տղայի համար: Նա կոչում էր ի մարտ, ի վրեժ, և որբացած երեխան լուսաբացի կիսամութի մեջ քայլում էր մոր պատվիրանը կատարելու սրբազան նպատակով: Անտառեզրին կանգ առան: Ջոկատը բաժանվեց երկու մասի: Պետք է ամուր, հուսալի աքցանի մեջ առնել գյուղը, որ ոճրագործներից ոչ ոք փախչելու հնարավորություն չունենա: Ստյոպան պարտավոր էր լինել հրամանատարի և նրա կապավորի կողքին: Դա հրամանատարի որոշումն էր: Այսպես ավելի ապահով կլինի: Նախ, տղային թույլ չեն տա անզգույշ քայլ անել, հետո՝ հրամանատարը մարտի պահին պարտավոր է լինել շղթայի ամենաապահով մասում, տղան էլ իր հետ կլինի:

Կարմիր հրթիռն ազդանշանեց հարձակման սկիզբը: Թշնամին դեռևս արթնության նշաններ ցույց չէր տալիս, երբ պարտիզաններն արդեն գյուղում էին: Դա էլ վճռեց հարձակման ելքը: Քնաթաթախ, գլուխը կորցրած հակառակորդը ուղղակի խփվում էր կրակի մի պատնեշից մյուսին: Այն շղթան, որի մեջ էր գտնվում Ստյոպան, արագությամբ կիսեց փողոցն ու դուրս եկավ ուղիղ գերմանական շտաբի առջև: Տունը գտնվում էր պարտեզի մեջ, շրջապատված ծառերով ու թփերով: Նրա շրջակայքում թեժ մարտ էր բորբոքվել: Մի խումբ ֆաշիստ զինվորներ փակել էին դեպի շտաբ տանող ճանապարհը և գնդացրային կրակով խափանում էին մեր զինվորների առաջընթացը:

— Հարկավոր է լռեցնել գնդացիրը,— լսվեց ջոկատի հրամանատարի ձայնը:

Մի քանի նռնակ միաժամանակ թռան դեպի գնդացրի կրակե, թունավոր լեզուն: Մեկ, երկու, երեք միասնական դիպուկ նետում, և գնդացիրը լռեց: Ստյոպան առաջիններից էր, որ նետվեց պարտեզ: Նա շտապում էր... Շատ էր շտապում... Շատ...

— Ստյոպա, հանկարծ ինձ չկորցնես, տղաս,— լսվեց հրամանատարի ձայնը:

— Լսում եմ,— պատասխանեց և նետվեց առաջ:

Ահա՛, ահա՛ հաուպտմանի ննջարանը: Պատուհանը բաց է: Հրամանատարի կապավորը Ստյոպայի կողքից նետվեց առաջ, ընթացքից ավտոմատի կրակահերթեր ցանելով սենյակի բաց պատուհանից ներս: Շենքը դավադրաբար լռում էր: Նորից կրակահերթ և նորից լռություն: Ահա այստեղ կապավորին դավաճանեց զգոնությունը: Կարծելով, թե սենյակում ոչ ոք չկա, նա բարձրացավ ու քայլեց դեպի պատուհանը: Եվ արթնացավ լռությունը: Մի պահ միայն Ստյոպան նկատեց ավտոմատի փողը: Այնուհետև թռան լուսածիր գնդակների պարսերը դեպի կապավորի հնազանդ ու փխրուն մարմինը, մխրճվեցին նրա մեջ, և նա ընկավ ցողոտ կանաչին:

— Խփեցի՜ն...— ճչաց Ստյոպան և ինքը նետվեց առաջ: Թփերի մեջ բոլորովին չէր երևում պատանի պարտիզանը, իսկ վայրկյան անց նա արդեն պատուհանի տակ էր: Նռնակը ոչ թե նետեց, այլ կախեց պատուհանից ներս, իսկ հաջորդ վայրկյանին պայթյունի ահավոր ալիքը նրա վրա շպրտեց պատուհանի տեղահանված շրջանակն ու ապակու կտորտանքը: Բախտ էր, որ նա նույնիսկ քերծվածք չստացավ: Երբ ներս նայեց պատուհանից, Ֆրանց Շրեյդերը ընկած էր քարուքանդ սենյակի մեջտեղում:

— Ես լուծեցի՜ մերոնց վրեժը,— ճչաց նա և ընկավ ջոկատի հրամանատարի գիրկը:

Իսկ հրամանատարը, մանչուկին պինդ գրկած, ցավով ու ափսոսանքով մտածում էր, որ նա վաղուց արդեն տասներեք տարեկան չէ: Վաղուց անցել էր մանչուկի մանկությունը: Այս փոքրիկ ու վտիտ մարմնի մեջ ապրում էր տառապանք տեսած մի հասուն տղամարդ: Եվ կռիվներում թրծված խիզախ հրամանատարը սոսկաց այս... այս անբնականությունից... ու է՛լ ավելի ամուր գրկեց մանչուկին, կարծես վախենալով, որ վերջին անգամն է գրկում նրան... որ նա վերջին քնքշությունն է տեսնում կյանքում... Գլխի կընկնե՞ն արդյոք, որ նա տասներեք տարեկան է, ընդամենը տասներեք տարեկան...

**ԱՆՏՈՒԱՆ ԴԸ ՍԵՆՏ ԷՔԶՅՈՒՊԵՐԻ**





# «Ես ուզում եմ մարտնչել հանուն սիրո և իմ հավատքի...»

Ո՞վ էր նա ամենից առաջ: Օդաչո՞ւ, ավիացիայի պիոնե՞ր, որ նոր ուղիներ էր բացում երկնքում, թե՞ գյուտարար (նրա տեխնիկական լուծումները մինչև օրս էլ զարմացնում են ինժեներներին), թե՞ գրող՝ «Գիշերային թռիչք», «Մարդկանց երկիրը», «Միջնաբերդ», «Փոքրիկ իշխանը» գրքերի հեղինակը: Աշխարհում քիչ գրողներ կան, որոնց ստեղծած հերիաթներով սերունդներ են մեծանում: Նա զոհվեց 1944 թ-ին, 44 տարեկանում, պաշտպանելով մարդկանց երկիրն անմարդկայինից՝ ֆաշիզմից:

Անտուան դը Սենտ Էքզյուպերիի մասին գրքեր են հրատարակվում ու վերահրատարակվում ամբողջ աշխարհում: Սակայն նրա մասին երևի ամենից լավ պատմում են իր նամակները:

Թուլուզ, 26 նոյեմբերի,
1939 թ.

**Աղաչում եմ քեզ, համոզիր Շամսոնին, որ ինձ տեղափոխեն կործանիչների**

էսկադրիլիա... Ես ինձ բարոյապես հիվանդ կզգամ այնքան ժամանակ, քանի դեռ ռազմաճակատում չեմ։ Ինձ հանգիստ չի տալիս այն, ինչ այսօր կատարվում է աշխարհում։ Բայց ես կարող եմ խոսել միայն որպես մարտիկ և ոչ թե զբոսաշրջիկ։ Խոսելու իրավունք ստանալու համար միակ հնարավորությունն է դա։ Թռչում եմ օրը չորս անգամ, ես իմ տարերքի մեջ եմ։ Բայց ինձ ուզում են ոչ միայն շտուրմանների, այլև ծանր ռմբակոծիչների հրահանգիչ դարձնել։ Եվ ես շնչահեղձ եմ լինում, վատ եմ զգում և կարող եմ միայն լռել... Մի բան արա, որ ինձ տեղափոխեն կործանիչների էսկադրիլիա։ Ես ծարավի չեմ արյան, բայց իմ ուժերից վեր է մնալ թիկունքում և զրկվել ռիսկի դիմելու հնարավորությունից։ Հարկավոր է մարտնչել։ Բայց այդ ասելու իրավունքը չունեմ, քանի դեռ անվտանգ շրջում եմ Թուլուզի փողոցներով։ Ինչպիսի՜ ինտելիգենտական գարշելիություն. հարկավոր է խնայել նրանց, ովքեր «ինչ-որ արժեք են ներկայացնում»։

Միայն անձնական մասնակցությամբ կարելի է օգուտ բերել։ Նրանք, ովքեր նույնիսկ երկրի աղն են և «արժեք են ներկայացնում», պետք է միանան այս հողագնդին։

Թուլուզ. «Գրանդ Հոթել Տիվոլե», նոյեմբերի սկիզբ, 1939 թ.

Ես չեմ ամաչում խնդրել։ Ես ո՛չ պաշտոն եմ խընդրում, ո՛չ փող։ Խնդրում եմ, որ ինձ ուղարկեն ռազմաճակատ, կործանիչների էսկադրիլիա։ Այդ ծառայությունն ինձ համար կենսականորեն կարևոր է։ Եվ եթե նույնիսկ դա դժվար է իրականացնել, ես, միևնույն է, շարունակելու եմ համառորեն խնդրել... Ես պետք է մասնակցեմ պատերազմին՝ հանուն հավատի։ Սպառնալիքի տակ է այն ամենը, ինչ ես սիրում եմ։ Երբ Պրովանսում այրվում են անտառները, ամեն ոք, ով ստոր չէ, վերցնում է դույլը և բահը։ Ես ուզում եմ մարտնչել հանուն սիրո և իմ հավատի։ Ես չեմ կարող մի կողմ քաշվել։ Այնպես արա, որ ինձ որքան կարելի է շուտ տեղափոխեն կործանիչների էսկադրիլիա։

Օրկոնտ[1], դեկտեմբերի կես, 1939 թ.

Ցեխ։ Անձրև։ Դատարկ երեկոներ։ Կասկածանքների մելամաղձություն։ Հուզմունք՝ տասը հազար մետրից առաջ[2]։ Վա՞խ։ Իհա՛րկե։ Մի խոսքով, այն ամենը, ինչ մարդկային է...

---

1. Բժիշկները մերժում են Սենտ Էքզյուպերիի խնդրագիրը՝ կործանիչների էսկադրիլիա տեղափոխվելու մասին, այն ժամանակ նա արդեն 39 տարեկան էր, ուներ հին վնասվածքներ, որ նախկին վթարների արդյունք էին։ Էքզյուպերին ստիպված է զիջել։ Նրան տեղափոխում են օդային հեռավոր հետախուզության զորամաս, որը գտնվում էր Օրկոնտ գյուղում, Շամպանում։

2. Խումբը մարզվում էր երկշարժիչ «Պոտեզ—63» կործանիչների վրա, որոնք նախատեսված էին տասը հազար մետր բարձրության թռիչքների համար։ Այդ բարձրության վրա «պոտեզների» ղեկավարման սիստեմը և գնդացիրները հաճախ շարքից դուրս էին գալիս, սրանով էին բացատրվում ֆրանսիական հետախուզական ավիացիայի զգալի կորուստները 1939—1940 թվականներին։

Ես ձեռք բերեցի այն, ինչ պետք է ձեռք բերեի։ Հիմա ես նման եմ բոլորին։ Եվ մրսում եմ, ինչպես բոլորը։ Եվ սարսափում եմ, ինչպես բոլորը։ Եվ ոսկորներս նըվվում են, ինչպես բոլորինը։ Իմ ընտրությունն ավելին չէ, քան բոլորինը...

Ուզում եմ լինել բոլորովին անհայտ զինվոր։

Օրկոնտ, դեկտեմբերի վերջ, 1939 թ.

... Ես ո՛չ ծեր եմ, ո՛չ երիտասարդ։ Պատանեկությունից անցնում եմ ծերություն։ Ես նոր ստեղծվող ինչ-որ մի բան եմ։ Սկսում եմ ծերանալ։ Վարդն այն չէ, որ բացվում է, ծաղկում և թոշնում։ Վարդը հաջորդական վիճակներ չէ։ Վարդը մի քիչ տխուր հանդես է... Ես տխուր եմ այս սարսափելի մոլորակի համար, որի վրա ապրում եմ և այն ամենի, ինչ չեմ կարողանում հասկանալ։ Հոգնել եմ, բայց՝ միանգամայն բացատրելի մի հոգնությամբ։

Իսկ մինչ այս մկրտությունը ես կարծում էի, թե տասը հազար մետրը դանդաղ պայքար է ուշաթափության դեմ՝ սարսափելի քրտինք ճակատիդ, ափերիդ մեջ և այդ քաղցրմեղցր զգացումը՝ մտքերի աղավաղումը։

Ոչ, տասը հազար մետրը այնքան էլ ծանր չէ, ինչպես վեցը՝ առանց թթվածնի։ Եվ հանկարծ այն ամենը, ինչ առաջ ինձ հիացնում էր, փլվեց։ Թուլուզում ինձ հիացնում էր մայոր Միշին՝ իմ միակ ծանոթ զինվորական օդաչուն, որ թռչում էր մեծ բարձրությունների վրա։ Հերոսները փոխվում են ամեն օր։ Նրանք իջնում են բարձունքներից և քիչ են խոսում իրենց սխրանքների մասին։

Այդպիսին են նրանք՝ հերոսները, խիստ և քչախոս: Երբ դիմում ես նրանց, թոթվում են ուսերն ու ասում. «Փոքրիկ, դու չես հասկանա»: Հիմա հասկանում եմ նրանց լռության իմաստը: Նրանք ասելու բան չունեին: Արիությունը դրանում չէ: Ընտրության մեջ է: Եվ Միշին քաջարի մարդ էր, քանի որ հենց սկզբից գիտեր, որ տասը հազար մետրը բարձրության վրա թռվածնային ապարատի շարքից դուրս գալու հավանականություն կա և որ դա մահացու է: Դրա համար էլ օդաչուին անհրաժեշտ է արիություն: Նա պետք է հաստատակամ լինի, բայց նաև գեղեցիկ պատրանքներ ունենա: Եվ դա արժանի է հարգանքի: Միայն դա: Բայց երբ պատրանքը ցրվի, կմնա արհեստը, ինչպես սովորական մի բան թռչել տասը հազար մետր բարձրության վրա կամ աթոռներ հյուսել... Քանի որ պատրանքն այլևս չկա:

Ես դա ապրել եմ շատ անգամ: Երբ թռչում էի գիշերը, երբ խեղդվում էի ծովում, երբ մեռնում էի ծարավից...

Եվ համարձակությունը դառնում է մի այլ տեսակի վեհանձնություն, բոլորովին ուրիշ, քան հարբած սերժանտի համարձակությունը: Դառնում է ինքնագիտակցության պայման: Իհարկե, իհարկե, ողբերգությունները լինում են միայն սոցիալական: Բայց միայն հիվանդ երեխան էլ արդեն ողբերգություն է: Այն, ինչ մեկ ուրիշի համար ողբերգություն է, քեզ համար՝ երբեք: Առա՛ջ՝ տասը հազար մետր: Ինքնաթիռը պայթեց, և այլևս ոչինչ չկա: Այլևս մարդուն երբեք չես տեսնի, միայն՝ անսահման երկիր: Եվ ցրտից դողացող աղջիկն ավելի է ցավ պատճառում, քան ջեռուցման համակարգի անսարքությունը միևնույն հիսուն աստիճանի դեպքում: Ես գիտեմ ինչ է ցուրտը: Ես գիտեմ ինչ է ծարավը: Ես գիտեմ ինչ է վտանգը, բայց՝ միայն ուրիշ մարդու համար:

Որտեղի՞ց այդ ձգտումը՝ ամեն ինչ վերցնել սեփական անձի վրա: Ես վերցրել եմ ինձ վրա տասը հազար մետրը: Դա է «իմ պատերազմը»:

Այսօր ընտրության հնարավորությունն այնքան էլ լայն չէ՝ կա՛մ համաձայնել ու դառնալ Հիտլերի ստրուկը, կա՛մ չհամաձայնել և գիտակցել, թե ինչով է դա քեզ սպառնում: Եվ անել դա լուռ... Ես գիտեմ, թե հրաժարվելն ինչ սպառնալիք է ինձ համար: Միայն թե ինձ պետք էր հաղթահարել այդ արգելքը, որպեսզի մինչև վերջ զգայի, թե ինչից են հրաժարվել մարդիկ, զրկելով իրենց հանգստից: Ինչից ես էլ եմ զրկում ինձ:

Կա մի ինչ-որ բան, որ ես նորից եմ հայտնաբերում: Եվ գուցե դա ամենագեղեցիկ բանն է այս տարօրինակ սարի վրա, որտեղ ես բոլորովին միայնակ եմ: Գեղեցիկ՝ նրանց համար, ում ես սիրում եմ, ավելի գեղեցիկ՝ բոլոր մարդկանց համար: Հին պատմություն է. երբ ինքդ ես վտանգի մեջ, պատասխանատու ես դառնում բոլորի համար: Ուզում եմ ասել.

«Խաղաղությո՛ւն ձեր հոգիներին»:

Օրկոնտ, հունվար, 1940 թ.

Այսօր երեկոյան կամ վաղը տեղափոխվում ենք նոր տեղ... Թռչելու ենք, հենց որ ձյունը դադարի...

Քիչ է լինել արդարացի, հարկավոր է նաև գործել...

Լաոն, 27 հունվարի, 1940 թ.

Ինչ զզվելի է հիմա իմ գոյությունը: Հայելիով այս պահարանը, հյուրանոցի այս համարը, այս բուրժուական կյանքը:

Աստիճանաբար և միայն հիմա եմ սկսում հասկանալ՝ ինչպես էի սիրում Օրկոնտը: Իմ կյանքը ֆերմայում, իմ պաղ սենյակը, կեղտն ու ձյունը այնքան մոտեցրին ինքս ինձ: Տասը հազար մետրը՝ նույնպես, եթե լուրջ խոսենք:

Ես կրկին անորոշության մեջ եմ: Նորից չեմ կարող ինքս ինձ գտնել: Այնտեղ, Օրկոնտում, իմ խոստումները իրականանում էին, ես սկսել եմ քիչ-քիչ փափկել: Գռնչուական կյանքը իմ սրտով չէր: Ուզում էի նրանց մոտ գնալ, բայց միայն այն ժամանակ, երբ նրանք լուռ են: Ուզում էի գնալ «դրսից»՝ իմ ֆերմայից կամ տասը հազար մետր բարձրությունից: Իսկ Հոլվեկն, իհարկե, սխալվում է, եթե մտածում է, թե չեմ կարող ապրել առանց ակումբի, առանց աղմուկ-իրարանցման:

Ես ամբողջ մեջ հեշտությամբ կարող եմ մենակ մնալ: Ջեռք-ձեռքի տված էլ գնանք, մինչույն է, ես ունեմ իմ սեփական գլուխն ու որջը: Բայց հիմա ես այլևս չունեմ իմ որջը, չունեմ իմ երկինքը, որտեղ կարող եմ տարածել ճյուղերս: Ես ամբողջովին չորացել եմ և չեմ հավատում ինքս ինձ: Ավելի լավ է փամփուշտները ինձ քրքրեն, քան այս հյուծող չորությունը:

Ես մեռնում եմ մենակ մնալու ծարավից: Ես հրաշալի մեքենա եմ, բայց

ինձ հարկավոր է համապատասխան վառելանյութ: Օգնություն է պետք: Ինձ պետք է բացահայտվել իմ աչքում: Բացատրեք: Ասացեք ինձ, ինչպե՞ս կարող եմ չչորանալ և պըտուղներ տալ: Էհե՜յ:

Բարի կամքն ինձ արբեցնում է: Ես, ինչպես նարընջի ծառը, գնում եմ փնտրելու իմ հողը: Սակայն նարնջի ծառն այնքան էլ շարժուն գոյություն չէ: Դըժվար է հողը փոխել: Միայն բնազդն է ինձ հուշում, թե որտեղ կա խոնավություն: Իսկ կա, թե չկա, պարզվում է տեղում: Բայց ես երբեք չեմ իմացել, թե ուր է պետք գնալ:

Ես շատ անշնորհք ծառ եմ:

Պորտուգալիա, 1-ը դեկտեմբերի, 1940 թ.

Գիյոմեն մեռավ, այս երեկո ինձ թվում է, թե ես այլևս ընկերներ չունեմ:

Ես չեմ բողոքում: Երբեք չեմ կարողացել ողբալ մեռածներին, բայց նրա հեռանալը...

Որքա՞ն ժամանակ է պետք այդ մտքի հետ հաշտվելու համար, իսկ հիմա դա վեր է իմ ուժերից: Հարկավոր են ամիսներ ու ամիսներ:

Այ թե ինչ շատ ենք ծերանում: Կասաբլանկա-Դակար երթուղով թռչող անձնակազմներից մնացել եմ միայն ես: Իմ բոլոր ընկերները զոհվեցին, և ամբողջ աշխարհում ոչ-ոք չմնաց, ում հետ կարողանայի կիսել հիշողություններս: Ահա և ես դարձա ընկեր չունեցող անատամ և միայնակ ծերուկ: Եվ չկա մեկը, որին կարողանամ ասել. «Իսկ հիշո՞ւմ ես»: Ես կարծում էի, թե միայն ալեորներին է վիճակված ճանապարհին կորցնել իրենց բոլոր ընկերներին:

Հարկավոր է ողջ կյանքը նորից սկսել...

Ալժիր, 1943 թ. դեկտեմբեր

... Ես չեմ կարող սիրուց դուրս ապրել: Ես միշտ խոսել, գործել, գրել եմ սիրուց մղված.. Ոչ մի պատճառ չունեմ ինձ նախատելու. կյանքումս ոչ մի զզվելի, չար արարք չեմ գործել, շահամոլ չեմ եղել, մի տող անգամ չեմ գրել փողի համար...

Տեսնում եք, ես կյանքը չեմ հասկանում:

Գիշերները աշխարհում ամեն բանի համար վախենում եմ: Վախենում եմ մըտերիմներիս համար: Հայրենիքիս համար, այն ամենի համար, ինչ սիրում եմ...

Ինքս ինձ ասում էի. «Չընայած տարիքիս՝ կռվել եմ հայրենիքիս համար, խոսել, գրել եմ զավթիչների դեմ: Միշտ ատել եմ քաղաքականությունը, բայց ոչ ոք որևէ բանում չի կարող ինձ մեղադրել...»:

Եթե քիչ թե շատ գրել եմ սովորել, ապա միայն այն պատճառով, որ անգթորեն նկատել եմ իմ բոլոր թերությունները: Ոչ մի նախադասություն չեմ թողել անփոփոխ: Հին ասացվածքըն այնքան էլ հեռու չէ ճշմարտությունից. ես գրել չգիտեմ, ես միայն գրվածն ուղղել գիտեմ...

«Այնքան տխուր եմ, շունչըս է կտրվում»: Ես դա այնքան զգույշ ու կամաց շշնջացի, ասես բանաստեղծություն լիներ: Ես պարզապես ուզում էի մի փոքր տրտնջալ... Մահճակալիս մեջ կծկվելով, որ շուտ քուն մտնեմ, փորձեցի ինձ մխիթարել և ինքս ինձ շշնջացի. «Այնքան տխուր եմ, շունչս է կտրվում»:

Բայց նման արտահայտությունները ասես ոսկե ձկնիկներ լինեն: Առանց ջրի դրանք բանի նման չեն: Նույնը և՝ առանց երազների: Համենայնդեպս, դա այդպես է. այնքան տըխուր եմ, շունչս է կտրվում:

30 հուլիսի, 1944 թ.
Սենտ-Էքզյուպերիի վերջին նամակը

... Պատերազմի արհավիրքների առջև ես միանգամայն բաց եմ ու անպաշտպան: Մոտ օրերս ինձ հետապնդում էին կործանիչները, և ես հրաշքով փրկվեցի: Դա կարծես բարերար ազդեցություն թողեց ինձ վրա, բայց ոչ այն պատճառով, որ կռվարար ոգի կամ ինչ-որ սպորտային մոլեգնություն ունեմ, այլ որովհետև աշխարհում ոչինչ չեմ ընդունում, ոչինչ, բացի մարդու ներքին էության հատկանիշներից:

Առաքինությունն այն է, երբ կարող ես փրկել Ֆրանսիայի հոգևոր արժեքները՝ դառնալով Կարպանտրասի[4] գրադարանի պահապան: Եվ միանգամայն անպաշտպան թռչել ինքնաթիռում: Երեխաներին կարդալ սովորեցնել: Մահն ընդունել որպես հասարակ հյուսն...

Դաշտային փոստ № 99027

3 Նոյեմբերի սկզբին էսկադրիլիան նորից տեղափոխվում է Ալժիր: Վստահ լինելով, որ ԱՄՆ-ը պետք է պատերազմի մեջ մտնի, էքզյուպերին որոշում է մեկնել Ամերիկա: Նա գնում է Լիսաբոն, որտեղից հազվադեպ նավեր դեռ նավարկում էին Ատլանտյան օվկիանոսով:

4 Փոքրիկ քաղաք Ֆրանսիայում:

ԳԵՎՈՐԳ ԷՄԻՆ



# Օրորոցի երգ

Քեզ օրո՜ր ասեմ,
Օրո՜ր ու նանի՜կ,
Ննջի՜ր, իմ լուսե,
Ննջի՜ր, իմ բալիկ.
Գիշեր է իջնում
Ու մութ է դրսում,
Ինչո՞ւ չես ննջում
Էլ ի՞նչ ես ուզում.—

Բարի՜ է մեր տունը,
Աշխարհը՝ խաղաղ,
Մայրիկդ՝ սիրուն,
Հայրիկդ՝ ուրախ.
Տատդ՝ դեռ առույգ,
Պապդ՝ տնարար
Մենք քե՜զ ենք սիրում
Եվ սիրում իրա՜ր...

Մեր սերն ու խինդը
քեզ միշտ պահապան
Մեր ուզածն ի՜նչ է—
հասարա՜կ մի բան,
որ դու շո՜ւտ ննջես
ու շո՜ւտ մեծանաս,
մեր գրկից իջնես
ու տե՜րը դառնաս
մեր հողին անգին,
լեզվի՜ն մայրենի,
Ննջի՜ր, իմ մանկիկ,
Օրո՜ր ու նանի՜կ:

# Ավելը

(անգլերենից)

Եթե ամեն մի ավել
Գոնե իր տա՜կը ավլեր,
Նույնիսկ երեսը լուսնի
Փոշու երես չէ՜ր տեսնի...

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

# Հիմն Հայաստանի

Թող հավե՜րժ ապրի մեր ժողովուրդը,—
Հազա՜ր տարիներ ու հազա՜ր դարեր.

Ապրի՜, ինչքան շատ ապրե՜լ է, տնե՜լ,—
Հազա՜ր տարիներ ու հազա՜ր դարեր,

Ապրի՜, ինչքան շատ զոհե՜ր է տվել,—
Հազա՜ր տարիներ ու հազա՜ր դարեր.

Ապրի, ինչքան հայ դեռ պիտի ծնվի,—
Հազա՜ր տարիներ ու հազա՜ր դարեր.

Ինչքան եղել է քա՜ջ ու անձնվե՜ր,—
Հազա՜ր տարիներ ու հազա՜ր դարեր.

Ինչքան տե՜նչ ունի և տենչի թևե՜ր,—
Հազա՜ր տարիներ ու հազա՜ր դարեր...

Թող այնքա՜ն ապրի մեր ժողովուրդը,
Քանի ապրում է այս հողագո՜ւնդը...

ԷՌՆԵՍՏ ՀԵՄԻՆԳՈՒԵՅ

# Սպասում

Անգլերենից թարգմանեց
ՌՈՒԶԱՆ ՂԱԶԱՐՅԱՆԸ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

Մենք դեռ անկողնում էինք, երբ նա սենյակ մտավ պատուհանները փակելու, ու ես անմիջապես նկատեցի, որ հիվանդ է: Նա դողում էր, դեմքը գունատ էր, քայլում էր դանդաղ, կարծես յուրաքանչյուր քայլը նրան ցավ էր պատճառում:

— Ի՞նչ է պատահել, տղաս:

— Գլուխս ցավում է:

— Լավ կանես, որ պառկես:

— Ոչ, ես ինձ լավ եմ զգում:

— Գնա պառկիր: Հիմա կհագնվեմ ու կգամ քեզ մոտ:

Սակայն երբ իջա նրա մոտ, տեսա, որ ինը տարեկան տղաս արդեն հագնված, նստել է բուխարու մոտ՝ խեղճացած, հիվանդ տեսքով: Ձեռքս դրի ճակատին: Բարձր ջերմություն ուներ:

— Պետք է պառկես,— ասացի,— դու հիվանդ ես:

— Ես ինձ լավ եմ զգում,— պատասխանեց նա:

Բժիշկը եկավ ու չափեց տղայիս ջերմությունը:

— Ինչքա՞ն է,— հարցրի:

— Հարյուր երկու:

Բժիշկը մի քանի տարբեր դեղեր տվեց ինձ՝ տարբեր գույնի փաթեթների մեջ, ու բացատրեց՝ ինչպես ընդունել: Մեկը ջերմություն իջեցնող էր, մյուսը՝ լուծողական, իսկ երրորդը՝ թթվայնության դեմ: Գրիպի բացիլները թթվային միջավայր են սիրում, բացատրեց նա: Երևում էր, գրիպը նրա համար սովորական բան էր, ուստի ասաց, որ անհանգստանալու ոչինչ չկա, եթե միայն ջերմությունը չբարձրանա հարյուր չորս աստիճանից ավելի: Հիմա թեթև տեսակի գրիպ է տարածված, սարսափելի չէ, եթե միայն թոքերի բորբոքում չսկսվի:

Մանկասենյակ վերադառնալով, գրի առա տղայիս ջերմությունը և ժամերը, թե երբ որ դեղը պետք է տամ:

— Ուզո՞ւմ ես քեզ համար կարդամ:

— Կարդա, եթե ուզում ես,— ասաց տղաս: Դեմքը շատ գունատ էր, աչքերի տակ մութ շրջանակներ էին գոյացել: Նա պառկած էր անշարժ, անտարբեր, թե շուրջն ինչ է կատարվում: Սկսեցի կարդալ Հովարդ Փայլի «Պատմվածքներ ծովահենների մասին» գիրքը, բայց տեսնում էի, որ նա ինձ չի լսում:

— Ինչպե՞ս ես, տղաս,— հարցրի:

— Առայժմ ոչ մի փոփոխություն,—ասաց նա:

Նստեցի մահճակալին, նրա ոտքերի մոտ, ու սկսեցի կարդալ մտքումս, ըսպասելով մինչև երկրորդ դեղը տալու ժամանակը: Կարծում էի՝ նա կքնի, սակայն, աչքերս գրքից կտրելով, հանկարծ նկատեցի նրա հայացքը. տարօրինակ մի հայացք էր դա՝ սևեռված մահճակալի ծայրին:

— Ինչո՞ւ չես քնում: Դեղը տալու ժամանակը որ գա, քեզ կարթնացնեմ:

— Ոչ, ավելի լավ է արթուն մնամ:

Մի քանի րոպե հետո ասաց ինձ.

— Հայրիկ, եթե քեզ համար դժվար է, ավելի լավ է գնաս այստեղից:

Մտածեցի, որ սկսել է մի քիչ զառանցել, և ժամը տասնմեկին, տալով դեղը, դուրս եկա սենյակից:

Պարզ, ցուրտ օր էր, նախորդ օրն եկած ձյունը սառել էր գիշերվա ընթացքում, և հիմա մերկ ծառերը, ճյուղերը, չորացած ուտերը, խոտն ու տեղ-տեղ մերկացած գետինը, ասես լաքի բարակ շերտով էին պատած: Վերցրի հետս իռլանդական ջահել սետտերին ու գնացի մի քիչ զբոսնելու՝ սառած գետի կողքով ձգվող ճանապարհին, սակայն ապակու պես ողորկ գետնին ոչ թե քայլել, նույնիսկ կանգնել հնարավոր չէր. շունս շարունակ սայթաքում էր, թաթերը սահում էին, ես ինքս էլ մի երկու անգամ փռվեցի գետնին, ձեռքիցս բաց թողնելով հրացանը:

Կավածածկ, ոչ բարձր ափից, որ թըփուտների նման կախվել էր գետի վրա, մեր քայլքից վախեցած՝ վեր թռավ կաքավների մի երամ, և երբ դրանք արդեն ափի զառիվայրի ետևում էին, ես արդեն երկու կաքավ էի խփել: Կաքավների մի մասը նստել էր ծառերի վրա, բայց մեծ մասը թաքնվել էր այստեղ-այնտեղ, ու դըրանց վեր թռցնելու համար ստիպված եղա մի քանի անգամ բարձրանալ սառցակալած ծառաթփերի վրա: Սայթաքուն, ոտքի տակ երերացող ճյուղերին կանգնած դժվար էր խփել վեր թռչող կաքավներին: Միայն երկուսին կարողացա խըփել, հինգին չդիպա, ու գոհ ետ էի դառնում, երբ երամին հանդիպեցի հենց տան մոտերքում: Ուրախ էի, որ խփելու կաքավ մնաց նաև հաջորդ որսի համար:

Տանն ասացին, որ տղաս ոչ մեկին թույլ չի տալիս մանկասենյակ մտնել:

— Ներս չգաք,— ասում էր նա,— Պետք չէ, կվարակվեք:

Մտա նրա մոտ: Պառկած էր դեռ նույն դիրքով, առաջվա պես գունատ, միայն այտերն էին ջերմությունից վարդագունել, ու առանց հայացքը կտրելու դարձյալ նայում է մահճակալի ծայրին:

Չափեցի ջերմությունը:

— Ինչքա՞ն է:

— Մոտ հարյուր աստիճան,— պատասխանեցի:— Ջերմաչափը ցույց էր տալիս հարյուր երկու և չորս տասնորդական:

— Առաջ հարյուր երկո՞ւ էր,— հարցրեց նա:

— Քեզ ո՞վ ասաց:

— Բժիշկը:

— Ջերմությունդ բարձր չէ,— ասացի:— Վախենալու բան չկա:

— Չեմ վախենում,— ասաց նա,— միայն թե չեմ կարողանում չմտածել:

— Չպիտի մտածես,— ասացի:—Հուզվել պետք չէ:

— Չեմ հուզվում,— ասաց նա, նայելով ուղիղ առաջ: Երևում էր, որ ամբողջ ուժը լարում է, որ կենտրոնանա ինչ-որ մտքի վրա:

— Դեղը կուլ տուր ու վրայից ջուր խըմիր:

— Կարծում ես կօգնի՞:

— Իհարկե կօգնի:

Նստեցի մահճակալի մոտ, բացեցի ծովահենների մասին գիրքն ու սկսեցի կարդալ, բայց նկատեցի, որ նա ինձ չի լսում, ու դադարեցի:

— Ի՞նչ ես կարծում, ես քանի՞ ժամից կմեռնեմ,— հարցրեց նա:

— Ի՞նչ:

— Ինձ ինչքա՞ն է մնացել ապրելու:

— Դու չես մեռնի: Դա ի՞նչ հիմարություն է:

— Ոչ, կմեռնեմ: Լսեցի՝ ինչպես նա ասաց՝ հարյուր երկու աստիճան:

— Ոչ ոք հարյուր երկու աստիճան ջերմությունից չի մեռնում: Ինչե՞ր ես հընարում:

— Ոչ, մահանում են, ես գիտեմ: Ֆըրանսիայում տղաները դպրոցում ասում էին, որ երբ ջերմությունը հասնում է քառասունչորս աստիճանի, մարդը մեռնում է: Իսկ իմը հարյուր երկու աստիճան է:

Նա ամբողջ օրը սպասում էր մահվան, սպասում էր առավոտյան ժամը ինից:

— Խեղճ տղաս,— ասացի:— Իմ խեղճ տղա: Դա նույնն է, ինչ մղոնն ու կիլոմետրը: Դու չես մահանա: Սա պարզապես ուրիշ ջերմաչափ է: Այն ջերմաչափի վրա նորմալ ջերմությունը երեսունյոթ աստիճանն է: Սրա վրա՝ իննսունութ աստիճանը:

— Դու հաստա՞տ գիտես:

— Իհարկե,— ասացի:— Դա նույնն է, ինչ մղոնները ու կիլոմետրերը: Հիշո՞ւմ ես, եթե մեքենան անցել է յոթանասուն մղոն, դա քանի՞ կիլոմետր է:

— Հա,— ասաց նա:

Սակայն մահճակալի ծայրին ուղղված նրա հայացքի լարվածությունը դեռ չէր թուլանում: Իր ընդհանուր լարված վիճակն էլ միանգամից չանցավ, իսկ հաջորդ օրն արդեն նա բոլորովին թուլացավ ու ամեն դատարկ բանից սկսում էր լաց լինել:

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# «Չգնահատված դասեր...»



Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

**Ինձ երբեք ոչ մի ուսուցիչ չի կանչել գրատախտակի մոտ այս դասերը պատասխանելու: Եթե կանչեին էլ, միևնույն է, ոչ մի բառ չէի կարողանա ասել, որովհետև դպրոցական տարիներին այդ դասերը միայն հույզ ու զգացողություն էին, որ հետո, օրերից մի օր պետք է միտք ու խորհուրդ դառնային: Իսկ երբ դուք դպրոցը վաղուց ավարտած լինեք, և ինչ-որ մի տեղ հանկարծ ձեր ականջներում լավի ինչ-որ ձայն, որ դաս պատասխանելու է կանչում, չզարմանաք ու չնայեք ձեր շուրջը: Ձեր ներսից է գալիս այդ ձայնը, և ձեր պատասխանը թող լինի առանց գնահատականի ակնկալման:**

Ամեն սեպտեմբերի մեկին մեր դասղեկ ընկեր Բալայանը մտնում էր դասարան ու հարցնում.

— Անցյալ տարի ո՞վ էր դասարանի ավագը:

Այդ հարցն ինձ դուր չէր գալիս: Ո՛չ այն բանի համար, որ պատասխանը բոլորին էր հայտնի, այլ որ գիտեի, թե դա ինչ է նշանակում. ես կրկին պետք է լինեի դասարանի ավագը: Ճիշտն ասած՝ սիրում էի ավագ լինել. դա նման է այն զգացողությանը, որով մենք համակվում ենք երամի առջևից թևահարող թռչունին, երամակի առջևից վարգող ձիուն նայելիս: Ի՞նչն է գեղեցկացնում երամը: Հավատը: Հավատն է տանում երամը: Եթե երամի բոլոր թռչունները չհավատան առաջնորդին, տեղ չեն հասնի, ուժասպառ ցած կընկնեն: Իսկ ինձ չէին հավատում: Ընդհանրապես չգրված օրենք կա դպրոցում. հենց սկզբից կասկածել ավագին: Երևանի № 102 միջնակարգ դպրոցը այս չգրված օրենքից դուրս չէր: Ո՞վ է ավագը. ուսուցիչների դրածոն, դասերից փախչելու միաձայն որոշում ընդունած դասարանում պառակտում գցողը, դասընկերների գաղտնիքները դասղեկին հասցնողը...

Բայց ես ուզում էի ավագ լինել, ինձ դուր էր գալիս պայքարել՝ իմ նկատմամբ վստահությունը կորցրած ընկերներիս հավատը վերականգնելու համար: Միայն թե ինձ ավելի հաճախ դիպվածն էր օգնում: Մի ուրիշ բան էլ էր ինձ ձգում. երբ ավագ ես, դասարանում ամեն ինչ քեզ այլ կերպ է ներկայանում, ինչ-որ ուրիշ ձևով ես մտածում:

Ընկեր Բալայանի հարցն ինձ դուր չէր գալիս, քանի որ ստիպված էի ձևացնել, թե չեմ ցանկանում ավագ լինել: Ինձ թվում էր, թե ամոթ է, եթե չես թաքցընում դասարանի ավագ դառնալու ցանկությունդ: Եվ ի պատասխան մեր դասղեկի հարցին՝ ծռմռվելով, համադասարանցիներիս հեգնական հայացքների ուղեկցությամբ ոտքի էի կանգնում: Ծանրությունը անգիր գիտեի.

— Թող այս տարի էլ, այս տարի էլ ինքը լինի,— շտապում էին համադասարանցիներս:

Ծտապում էին պատժել ինձ. հիմա ես դա պարզ տեսնում եմ: Ինչո՞ւ, չէ՞ որ ես նրանց ոչինչ չէի արել: Ուրեմն ի՞նչ էր դա...

Ես երբեք էլ այն կարծիքին չէի, թե դասարանի ավագ լինելը մեծ պատիժ է: Ճիշտ է, ընկերներս թերահավատորեն էին ինձ վերաբերվելու, բայց հավատում ու սպասում էի, որ օրերից մի օր գալու է այն երջանիկ պահը, երբ հանկարծ ինչ-որ դիպվածով պարզվելու է, որ իզուր են կասկածել: Ես աշխարհի չափ սիրում էի այդ պահը. հուզիչ է, երբ նորից են սկսում հավատալ քեզ, մանավանդ, որ չհավատալու հիմքեր չեն եղել: Ես նույնիսկ որոնում էի դիպվածը, ընդառաջ էի գնում դրան, սպասում ու կարոտում, և այն հանկարծակի հայտնվում էր. քեզ հետ էլ կսկսեն ընկերություն անել, ինչպես իրար հետ են անում: Եթե չլինեին ամառային երեքամսյա արձակուրդները, մի դիպվածն էլ բավական էր, որպեսզի ընկերներդ ընդմիշտ գտնեին քեզ: Սակայն ամառը մեզ բաժանում էր, օտարացնում: Իսկ սեպտեմբերի մեկին ամեն ինչ նորից էր սկսվում, ինձ նորից էին ավագ ընտրում, ես այլևս հին ավագը չէի՝ ինձ նորից են ընտրել, ամառը օտարացրել է մեզ, ես նոր ավագ եմ, կրկին պետք է «ճանաչեն» ինձ: Իսկ այդ ընթացքում ինչ էլ անեի, ինչ էլ կազմակերպեի՝ ցերեկույթներ, գրական-գեղարվեստական երեկոներ, ում էլ օգնեի որևէ դժվար հարցում, միևնույն է, կանխակալ

վերաբերմունքը չէր փոխվում. «Բա ումի՞ց Բալայանն իմացավ երեկվա կռվի մասին, որ Լևոնին պատժեց», «Ո՞վ էր Բալայանին ասել, որ Վաչիկն ու Անոնն իրարից նեղացել են» և ոչ մի պատասխան չհանդուրժող, պատասխանն իրենց խորքում որպես նախատինք պահած նման հարցեր. մոլորվում, ուսերս էի հուսահատ վեր քաշում: Եթե փորձես այդ պահերին մի բան ասել, առանց լսելու կմտածեն, թե արդարանում ես, հետևաբար՝ մեղավոր ես: Իսկ ես լռել չէի կարողանում, դրա համար էլ միշտ մեղավորի դերում էի: Ինքս էլ այն ժամանակ չէի հասկանում, թե ընկեր Բալայանը որտեղից, ումից էր ամեն ինչ իմանում, որոնում էի նրան, որի պատճառով մեղադրում էին ինձ: Բայց այդպես էլ նրան չգտա: Իսկ կասկածն իմ մեջ էր, և ես փորձում էի ընկերներիս: Այդ փորձությունների ընթացքում մեծ ջանքեր գործադրեցի, որպեսզի անդարձորեն չկորցնեմ նրանցից մի քանիսին, որոնք այսօր իմ ամենամոտ բարեկամներն են: Ծանր է կասկածի տակ լինել, բայց առավել ծանր է, երբ ստիպված ես կասկածել: Ու ես հետո հասկացա, որ ընկերությունը երբեք չեն փորձում, այն պետք է փորձության ենթարկվի ինքնիրեն: Մենք այն ժամանակ երևի փոքր էինք այդ իմանալու համար, թե չէ՝ ի՞նչ մի դժվար բան էր հասկանալ, որ ընկեր Բալայանին ոչ ոք էլ դասարանի գաղտնիքները չէր բացում, պարզապես մեր դասղեկը հինգ մատի պես ճանաչում էր մեզ և գիտեր, թե որ արարքը մեզանից ում «ոճին» է հատուկ: Ես այսօր եմ պատասխանելու այն հարցերին: Լսեք, իմ բոլոր դասընկերներ, հիմա, երբ հավաքվում ենք, միաձայն ասում եք, չէ՞, որ մեր դասարանում ամենակռվարարը Լևոնն էր: Հիշում եք, հուշերը կողք-կողքի շարում և տեսնում, որ Լևոնն, իրոք, կռիվ անել սիրում էր: Դա հիմա է մեզ համար պարզից պարզ, իսկ ընկեր Բալայանի համար այն ժամանակ դժվա՞ր էր իմանալ: Մենք մեր դպրոցական կյանքն այսօր ենք քննում, իսկ նա նույն բանը մանկավարժի իր փորձով այն ժամանակ էր անում: Կամ՝ ընկեր Բալայանը չէ՞ր տեսնում, որ Վաչագանն ու Անահիտը երկու-երեք օր է, որ իրար կողք չեն նստում, ուրեմն՝ մի սև կատու է անցել նրանց արանքով:

Մի օր ընկեր Բալայանը ողջ դասարանի ներկայությամբ ինձ մի տետր տվեց ու ասաց. «Սա էլ քո մատյանը վերցրու, կնշես բոլոր բացակաները: Եթե ինչ-որ բան աչքաթող անես, քեզ եմ պատժելու»: Ստանալ նման հանձնարարություն, այն էլ՝ ողջ դասարանի աչքի առաջ... Սխալվե՞ց ընկեր Բալայանը: Իսկ եթե հանձնարարեր դասարանից գաղտնի՞: Նենգություն կլիներ: Նա ճիշտ էր վարվել, իսկական մանկավարժի պես, նա մեզ ուզում էր սովորեցնել և ոչ թե մի վատ արարքի մեջ բռնեցնելով՝ ինքնագոհ ժպտալ, որ դա իրեն հաջողվեց: Ամեն դեպքում, այդ հանձնարարությունն ինչ-որ անջրպետ առաջացրեց իմ և համադասարանցիներիս միջև: Բաց վստահության զգացողությունը երևի թույլ չէր տվել, որ ընկեր Բալայանը հաշվի առներ նաև այդ նրբերանգը: Լավ բան անելիս էլ մարդը կարող է սխալվել, էլ ուր մնաց թե չվրիպի: Չգիտեմ, թե իմ փոխարեն մեկ ուրիշն ինչ կաներ, բայց ես բացակաները նշանակում էի: Եվ տետրը չէի թաքցնում: Չէի թաքցնում, որովհետև հանձնարարությունն ստանալիս այդ բաց վստահության գերազանցությունն էի ըզգում ծածուկ նենգության նկատմամբ: Համադասարանցիներս ինձ արդեն մեկուսացրել, մեն-մենակ էին թողել: Ամենասարսափելին այն չէ, որ մենակ ես և ընկերներդ քեզնից հեռու են փախչում, ամենասարսափելին այն է, երբ ինքդ ես սկսում քեզնից փախչել: Պատահեց նաև այդ: Սովորական օր էր: Ինչ-որ թղթակից (չեմ հիշում, թե որ թերթից էր) մըտավ մեր դասարան ու հարցրեց՝ ո՞վ է դասարանի ավագը: Ես ոտքի ելա: Նա ասաց, որ ավագների մասին նյութեր է հավաքում, և սկսեց ինձ հարցեր տալ.

— Ինչպե՞ս ես կատարում ավագի քո պարտականությունները, ինչպիսի՞ համադասարանական միջոցառումների պըլան ես մշակել, ի՞նչ մեթոդներով ես պայքարում դասարանի ընդհանուր առաջադիմության համար, դասընկերներդ քեզ սիրո՞ւմ են:

Ես կանգնել ու չէի կարողանում կողմնորոշվել համադասարանցիներիս հեգնական հայացքների տակ, դեմքս ինչ-որ ծակծկվում էր, անասելի ճիգեր էի գործադրում, որպեսզի ծնոտս հանկարծ իր տեղից անսովոր ձևով աջ կամ ձախ չընծովի, որպեսզի ականջներս մնան իրենց տեղում, քիթս անձողի չերկարի: Շրթունքներս զոռով իրարից պոկեցի.

— Դասարանի... ավագի... ավագի իմ պարտականությունները կատարում եմ...

— Լա՜վ, լա՜վ է կատարում։

— Դու էլ հո չասի՞ր...

— Կա-տարում, կա-տարում. կա՝ տարում է կատարում, կա՝ հինգ-վեց տարում է կատարում...

— Դե լավ, ի՞նչ եք... լավ էլ կատարում է, էլի,— այս ու այն կողմից հեգնելով, թե՞ անկեղծորեն (արդեն չէի կարողանում ըմբռնել) գոչում էին համադասարանցիներս։

— Ավագի իմ պարտականությունները կատարում եմ լավ,— օձիքս ազատել ուզեցի,— համադասարանական միջոցառումների պլանի մեջ եմ մտցրել երկու կինոդիտում, մեկ այցելություն հեղափոխության թանգարան, էքսկուրսիա՝ Հաղթանակի զբոսայգի, գրական-գեղարվեստական ցերեկույթ... Դասարանի ընդհանուր առաջադիմության համար մեր լավ սովորողները դասերից հետո մնում և օգնում են ետ մնացողներին (սո՛ւտ) Դասընկերներս ինձ սիրում են (ստից սո՛ւտ)։

Դպրոցում այդպես «մաքուր» գերազանցիկներն են պատասխանում՝ «հինգի» ակնկալմամբ։

Թղթակիցն արագ-արագ գրի էր առնում ասածներս և գոհ ժպտում էր՝ պատրաստվելով նոր հարցեր տալ։ Զգացի, որ նրա հարցերից զզվում եմ, ու դուրս եկա դասարանից։ Ես մինչև հիմա զզվում եմ նաև իմ տված պատասխաններից, կեղծ բառերից, որ ոչ թե իմը, այլ ասես ինչ-որ մեկինն էին, դրանք իրար կողքի դնելուց, ձայնիս հնչերանգից, որ երևի երբեք ականջներիցս դուրս չի գալու։ Երկար ժամանակ մտածում-փընտրում էի, թե այդ ում բառերով էի պատասխանել թղթակցին, ում ձայնով։ Ու գտա. հենց նրա՝ այդ թղթակցի։ Գտա ավելին՝ մարդկանց հարց պետք է ուղղել այնպես, ինչպես ուզում ես որ քեզ պատասխանեն։ Միայն թե այդ ամենը շատ ավելի ուշ հասկացա։ Իսկ դասարանից դուրս գալս էլ փախուստ էր ինքս ինձնից, որ գումարվեց ընկերներիս սառնությանը։ Իսկ երկար սպասված դիպվածն ուշանում էր։

Սակայն արդեն շատ երկար էի համբերել, հարկավոր էր գործել, իմ և դասընկերներիս միջև անդունդ էր գոյանում։ Անհրաժեշտ էր յուրօրինակ մի բան՝ համարձակ, ձգող, տրամադրող։ Պատմելիքս թող ոչ մի դասարանի ավագ որպես խորհուրդ չընդունի, հակառակ դեպքում՝ զգուշացե՛ք, դիրեկտորներ, վաղը դպրոցներում ոչ մի աշակերտ չի մնա։ Որոշումս համարձակ էր՝ փախուստ դասերից։ Մի՛ քմծիծաղեք։ Լինել դասարանի ավագ և մի ամբողջ օրով համընդհանուր, մի ամբողջ դասարանի փախուստ կազմակերպել, համաձայնեք, համարձակ քայլ է, էլ չեմ ասում, ինքնըստինքյան հասկանալի է, նաև ձգող ու տրամադրող քայլ, մանավանդ՝ պատասխանատվությունը ավագի վրա է։ Այդ «միջոցառումը» դասընկերներիս պետք է ապացուցեր, որ ես էլ եմ յուրային։

Ու փախանք Հաղթանակի զբոսայգի։

Ընկեր Բալայանը մեզ չպատժեց։ Նա հինգ մատի պես գիտեր իր դասարանը, և ինձ թվում է՝ գուշակել էր, որ նման համընդհանուր «գործ» միայն դասարանի ավագը կարող է կազմակերպել։ Չպատժեց, որովհետև եթե ես այդ փախուստը հիմա եմ իմ չգնահատված դասերի թվում հիշում, նա այն ժամանակ արդեն գիտեր, որ մենք Հաղթանակի զբոսայգում նայում էինք ժամացույցին ու մտահոգվում՝ հիմա դիրեկտորը կամ ուսմասվարը կանչել է մեր դասղեկին, ու նա մեր պատճառով ամաչում է։ Իսկ այդ փախուստն ինչպե՞ս էր գնահատելու ընկեր Բալայանը։

Հաճախ լավ չի երևում այն, ինչ մոտ է. կանգնիր բուրգի պատի մոտ ու չես հասկանա, որ դա բուրգ է։ Պետք է հեռանաս, մեծ բաները որոշ հեռավորությունից են լավ երևում։ Դպրոցական մեր վերջին զանգից հետո անցած ինը տարիները այդ որոշ հեռավորությունն են երևի, որովհետև միայն հիմա եմ հասկանում, թե ինչու մեր դասղեկ ընկ. Բալայանը այնքան էլ չէր սիրում այդ թիվ-գնահատականները ու երբ մեկնումեկից նեղացած էր լինում կամ որևէ մեկին ուզում էր պատժել, նրան գրատախտակի մոտ էր կանչում մատյանի համարով՝ այսինչ համար, արի գրատախտակի մոտ։ Խոսքիս թող վկա լինի մեր դասարանի Մուրադյան Սահակը։ Իսկ ընկեր Բալայանը ինը-տասը տարիների հեռավորությունից դեռ ինձ խորհուրդներ է տալիս։ Եվ այս խոսքիս վերնագիրն էլ՝ «Չգնահատված դասեր...», նրա ձայնն ինձ հուշեց։ Ես չնայեցի շուրջբոլորս, գրեցի վերնագիրը ու ձեզ եմ հանձնում՝ առանց գնահատականի ակնկալման։

ՏԻԳՐԱՆ ՄԱՆՍՈՒՐՅԱՆ

# «Երգը և խոսքը միատ

Ընդունված է երաժշտություն հնչելու պահին լռել: Պատմում են, որ նշանավոր երաժիշտներից մեկը նվագում էր, և այդ պահին համերգին ներկա գտնվող թագավորը սկսում է խոսել: Երաժիշտն ընդհատում է նվագը ու, երբ տեսնում է իրեն ուղղված հարցական հայացքները, ասում է. «Երբ թագավորն է խոսում, բոլորը լռում են»: Իհարկե, ունկընդիրները հասկանում են, թե ինչ էր ակնարկում նշանավոր երաժիշտը:

Այս պատմության հետ քանի-քանի տարիներ կրկնվում է անգետ թագավորի և երաժշտության ունկնդրման պահին բոլորիս-բոլորիս լռելու դասը:

Այդ չի նշանակում, իհարկե, թե երաժըշտությունն առհասարակ խոսելու և զրուցելու նյութ չի ընձեռում: Միշտ հակառակը, եթե մեր խոսքը երաժշտության հնչելու պահին չի լինելու, ապա ոչ միայն գոյության իրավունք ունի, այլ մարդըն առհասարակ սովոր է խոսել երաժըշտության մասին՝ թե՛ իր հիացմունքն արտահայտելով և թե՛ դժգոհություն հայտնելով:

Երաժշտության մասին խոսել են նաև հենց իրենք՝ երաժիշտները: Գերմանացի նշանավոր կոմպոզիտոր Ռոբերտ Շումանի՝ երաժշտության վերաբերյալ հոդվածները, աշխատությունները չափազանց օգտակար են ըմբռնելու համար երաժշտության այնևայլ հարցերը, հաղորդակից լինելու հնչյունների արվեստի գաղտնիքներին: Ռուս մեծ կոմպոզիտոր Պյոտր Չայկովսկին նույնպես երաժշտությանը վերաբերող բազմաթիվ ուսանելի հոդվածների հեղինակ է: Ֆրանսիացի Կլոդ Դեբյուսին երկար տարիներ զբաղվել է երաժշտական ժուռնալիստիկայով: Այնքան հետաքրքիր և հրաշալի են այդ հոդվածները, դրանցում՝ իշխող վիճելու ոգին: Երաժշտական արվեստի էությունը նորովի ապրելու ու այն բառերով ձևակերպելու զարմանալի կարողությունը բացառիկ արժեքավոր է դարձնում Կլոդ Դեբյուսիի հոդվածների շարքը: XX դարի խոշորագույն կոմպոզիտորներից մեկը՝ Իգոր Ստրավինսկին, երաժշտության վերաբերող մի շարք գըրքերի հեղինակ է: Երբ կարդում ես Ստրավինսկու աշխատությունները, քո առջև բացվում է զարմանալի խոր ու գրավիչ մտքերի մի աշխարհ: Ու թվում է ծայր չունի երաժշտության էության խորքերը պարզաբանող մտքերի ու խոհերի լարվածության ճանապարհը:

Հայ երաժշտության բնագավառում հնչյունների արվեստի շուրջ իրենց խոհերն ու մտածումներն են գրի առել Կոմիտասը և Արամ Խաչատրյանը: Կոմիտասի հոդվածներում հայ երաժշտական արվեստի հիմքերը դնող մեծ երաժշտի սկզբունքներն են ու հետաքրքրություններն: «Ժողովուրդը,— գրում է Կոմիտասը,— երգում է այնպես, ինչպես խորհում է և խոսում: Երգը և խոսքը միատեսակ կարողություն են, որքան լավ խորհի մարդ, այնքան լավ կխոսի և կերգի»: Հարկ կա՞ ասելու, թե ինչքան տարողունակ և խորը միտք է սա, որ պարզաբանում է ոչ միայն երաժշտության էության հարցը, այլ նաև երաժշտությունըն ըմբռնելու մեր կարողության մեկնակետը: Երաժշտության այս կամ այն տեսակը նախընտրելու պայմանը որոշում է նաև մեր խորհելու, ասել է թե՝ մըտահորիզոնի մակարդակը: Հարկ է ավելացնել, որ այստեղ Կոմիտասը ներկայացնում է լեզվի և երաժշտության կապը իբրև մի վիճակ, երբ լեզվական հնչյու-

# սան կատարողություն են»

նաբանությունից, չեշտադրական օրինաչափություններից ծնունդ է առնում երաժշտությունը՝ ելևէջների և շեշտադրության իր բնույթով: Ահա թե ինչպես մեկ այլ առիթով Կոմիտասը գրում է. «Մեծ խանդավառությամբ ընդգրկեցի նրա (խոսքը Վագների մասին է—Տ. Մ.) ազնիվ ու վսեմ սկզբունքը, նրա մեթոդը՝ եղանակը հանել խոսքերից և ոչ թե խոսքին եղանակ դնել»: Ահա «խոսքերից եղանակ հանելը» հենց խոսքի հնչյուններին ու շեշտերին ենթարկվելու ու նրանց ապավինելու սկզբունքն է: Այս պարագայում Կոմիտասը պատմական բացառիկ մի դերի իրագործողն է դառնում. հայերեն լեզվից հայերեն երաժշտություն ծնելու բեղուն ու տարողունակ ծրագիրն է իրականացնում: Ուրեմն, Կոմիտասի երաժշտությունն ամբողջությամբ զգալու համար ոչ միայն հնչյունների արվեստի գաղտնիքներին է պետք հաղորդակից լինել, այլև կարևոր է հայերեն լեզվի հըմայքը զգալու շնորհք ունենալ: Կոմիտասյան երաժշտության մեջ հայերեն լեզվի կենդանի ու ծփուն ոգին է պաշտամունքի աստիճանի սեր դարձել բոլորիս համար: Ինչ մոլեգնությամբ է սիրել Կոմիտասին Ե. Չարենցը: Հայ մեծ բանաստեղծին ճանաչողները վկայում են, որ նա երաժշտական լսողություն չի ունեցել, որ նրա երգելը եղել է «բաղաձայն»: Մինչդեռ Կոմիտաս լսելու պահանջը տարերային հզոր ուժ է եղել Չարենցի հոգում: Ի թիվս բազում այլ բարեմասնությունների ու գեղեցկության, Չարենցը Կոմիտասի երաժշտության մեջ զգացել է «խոսքից եղանակ հանելու» սկզբունքի հրաշալի արտահայտությունը. հայերեն լեզվի բնությունից հայերեն երաժշտություն բխեցնելու փառահեղ իրողությունը: Չէ՞ որ Չարենցը ինքն էր հըսկա մի լեզվաշինարար, հմուտ՝ հայերենի բազմաշերտությանը, ծալքերին, երանգներին:

Հայերենի խոշորագույն լեզվաշինարարներից էր նաև Պարույր Սևակը: Սևակը նաև նորարար էր լեզվամտածողության բնագավառում: Իր մեծ նախորդի՝ Չարենցի պես, Սևակը ևս ունեցել է Կոմիտասի պաշտամունք, որի վկայություններն են նրա «Անլռելի զանգակատուն» պոեմը, Կոմիտասին նվիրված հոդվածները: Այլևայլ արժանիքների և գեղեցկության կողքին, Սևակին ներշնչել է Կոմիտասի երաժշտության մեջ առկա հայերենի կենդանի ոգին:

Հայերեն լեզվից հայերեն երաժշտություն ծնելու կոմիտասյան առաքելության մասին կարելի է երկար խոսել: Երաժըշտության հացեհին Կոմիտասի բերած մեկ-երկու նախադասությունը բազում մանրամասնությունների մեջ մտնելու հնարավորություն է տալիս: Մանրամասնությունների խորքը մտնելու, վերլուծումներ անելու մեր փորձը մեր հոգևոր հպարտության մասն է դառնում բնականաբար: Հենց այդ հարստությունն էլ օգնում է ավելի խորը սիրել Կոմիտասի արվեստը կամ այլ կերպ ասած՝ առավել խորը հասկանալ, ըմբռնել այն: Այս ձևով երաժշտություն լսելը բոլորովին էլ պարապ ժամանց չէ, այլ լուրջ... այո՛, աշխատանք: Երաժշտություն լսելու այս աշխատանքն անողը վարձատրվում է այնպիսի մի հաճույքով, որ շատ նման է գյուտարարի՝ իր հայտնագործությունից ստացած ուրախությանը, տիեզերագնացի՝ իր ոտքերի տակ լուսնի մակերևույթն զգալու հրճվանքին: Այս համեմատությունները բոլորովին էլ չափազանցու-

թյուն չեն: Կոմիտասի երաժշտության խորքերը հայտնաբերելու բացառիկ հրճվանքն է ի վերջո գրի առել Պ. Սևակը իր «Անլռելի զանգակատան» մեջ: Ինչպիսի՜ բացառիկ ուժի հրճվանք է դա:

Էլի վերադառնանք Կոմիտասի՝ վերը բերված խոսքերին. «Ժողովուրդը երգում է այնպես, ինչպես խորհում է և խոսում: Երգը և խոսքը միատեսակ կարողություն են, որքան լավ խորհի մարդ, այնքան լավ կխոսի և կերգի»: Եթե հայերեն լեզվի հմայքը զգալու որոշ փորձ արդեն ձեռք ենք բերել և ըմբռնել ենք ահա հայերեն լեզվից հայերեն երաժշտություն բխեցնելու կոմիտասյան սկզբունքը, մեկ անգամ ևս ունկնդիր դառնանք Կոմիտասի երաժշտությանը: Մանավանդ՝ մեր հարցասիրության ոգին և գեղարվեստական հաճույքի մեր ակնկալիքն ուղղենք այդ երաժշտությանը: Հնարավոր է, որ այս ձևով Կոմիտասի միտքն ըմբռնելու՝ երաժշտագիտության ու լեզվագիտության բարձունքները տանող երկար ճանապարհի սկիզբն արդեն դրված է: Կամ Կոմիտասի երաժշտությունը չարենցյան, սևակյան, հզորությամբ սիրելու մեր փորձը իր առաջին քայլերն է անում: Ուրեմն, ի՞նչ օգտակար եղավ մեզ համար երաժշտության մասին ասված Կոմիտասի մեկ միտքը:

Նկատի ունենանք, որ լեզվից երաժըշտություն բխեցնելու սկզբունքից զատ, Կոմիտասի արտահայտության մեջ բացահայտվելու կարողություն ունեցող մի միտք ևս կա ներդրված. «Որքան լավ խորհի մարդը, այնքան լավ կխոսի ու կերգի»: Իսկ ի՞նչ է նշանակում «լավ խորհել»: Սա լուրջ հարց է: Այս հարցը շոշափելու համար մուտք ենք գործում երաժշտության և բարոյագիտության փոխադարձ կապի ընդարձակ աշխարհը:

Մարդու վրա երաժշտության բարոյական ներգործության մասին շատ է խոսվել՝ սկսած դեռ մարդկության պատմության ամենավաղ օրերից: Մաքուր ու վեհ խոհերի, ապրումների բարձր մի աշխարհ է բերում Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի Աղասին: Նույնպիսի ազնիվ ու վսեմ խոհ խոկալու կարողությամբ է միտված Ղ. Աղայանի «Անահիտը» հեքիաթի հերոսուհին՝ Անահիտը: Աշխարհի անարդարության դեմ ազնիվ վրդովմունքի ի՞նչ բռնկում է ապրում Սասնա Մհերը՝ Ավ. Իսահակյանի համանուն երկում: Ինչ բարձր ոգի ունեցող ու բարձրախոս այրեր են Խ. Դաշտենցի «Ռանչպարների կանչը» վեպի հերոսները, Ն. Զարյանի «Հացավան» վեպի Լևոն Լամբարյանը: Նրանց միտքն ու հոգին նույնպես բարոյական գիտակցության վերին ոլորտներում են ապրում: Ահա, երբ Կոմիտասը գրում է՝ «Որքան լավ խորհի մարդը, այնքան լավ կխոսի ու կերգի», արդյո՞ք այդ լավ «խորհողների» շարքում են Աղասին, Անահիտը, Սասնա Մհերը, Դաշտենցի և Զարյանի հերոսները: Իհա՛րկե: Արդյոք Կոմիտասի երաժշտությունը սիրելով ավելի խո՞րը պիտի կարողանայինք հասկանալ նըրանց: Անշուշտ, ավելի լավ պիտի հասկանայինք: Իսկ Աղասիին կամ Անահիտին ավելի լավ հասկանալով, ավելի ջե՞րմ պիտի բոցավառվեր մեր մեջ կոմիտասյան երաժշտությունը: Այո, ավելի ջերմ պիտի բոցավառվեր:

«Լավ խորհող» մարդկանց օրինակները մեջ բերվեցին գրականությունից, բայց իրականությունը նույնքան, գուցե և ավելի հարուստ է նման մարդկանցով: Դուք գիտեք նրանց: Բացառիկների մեջ ես կհիշատակեմ Ծավարշ Կարապետյանին: «Սովորականների» մեջ՝ հայերենի իմ ուսուցչուհուն՝ ընկեր Չախոյանին: Այս մարդկանց հոգու երգը անկասկած Կոմիտասի ասած «լավ երգն» է, որ հավասարվում է նրանց «լավ խոսքին», «լավ խոհին»:

Մեծ Կոմիտասի՝ երաժշտության մասին ասած այս մի քանի խոսքը թող մեզ համար բանալի դառնա՝ առավել սպառիչ ու խորը ըմբռնելու հայ երաժշտապետի ստեղծած արվեստը: Դա նույնն է, որ ինքներս ավելի լավ ճանաչենք մեր ամբարված բարին, լուսավոր ուժը: Երբ ինքներս մեզ ճանաչելու այնքան փորձ ունենանք, որ կոմիտասյան «Ծողեր ջան» երգը հայրենասիրության ու մարդասիրության դուռ դառնա մեզ համար, այնժամ ձեռք կմեկնենք Շումանի, Չայկովսկու, Դեբյուսիի, Ստրավինսկու, երաժըշտության շատ ու շատ մյուս մեծերի գրած գրքերին: Ու երբ ունկնդիր լինենք նրանց երաժշտությանը, «պարտադրված» լինենք լռելու, որպեսզի մեր կենսափորձի, մեր կարդացածի և հոգևոր մշակվածության հիմքի վրա երաժշտության անսպառ խորքերի անսպառ գաղտնիքները հայտնաբերենք:



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

ԶՐՈՒՅՑ ՔՍԱՆՄԵԿԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## Հայքը նորից անկախություն է նվաճում

**Պարսից թագավոր Կյուրոսի մահից հետո թագավոր դարձած նրա որդին՝ Կամբիսը, արշավեց Եգիպտոսի վրա: Մ. թ. ա. 525 թվականին պարսկական զորքը գրավեց ամբողջ Եգիպտոսը: Հետո Կամբիսն իր զորքով 3 տարի մնաց Եգիպտոսում: Նա հանկարծ լուր ստացավ, որ Պարսկաստանում նոր թագավոր կա, իսկ իրեն գահից գցել են: Կամբիսը շտապեց հայրենիք, բայց ճանապարհին մահացավ:**

**Իրոք, Պարսկաստանում ապստամբություն էր եղել, և թագավոր էր դարձել մոգ Գաումատան:**

**Պարսկաստանին հպատակ մի քանի երկրներ անջատվեցին նրանից: Հայերն, օգտվելով այս խառնաշփոթությունից, մ. թ. ա. 522 թ. սկզբին Հայաստանը հայտարարեցին անկախ:**

**Ծուտով Աքեմենյան տոհմի մի ներկայացուցիչ՝ Դարեհ անունով, իր վեց օգնականների հետ սպանում է Գաումատային և դառնում թագավոր: Նա կարգադրում է, որ Պարսկաստանից անջատված բոլոր երկրները նորից անցնեն իր իշխանության տակ: Անջատվածներից մի քանիսը չեն հնազանդվում: Դրանց մեջ էր Հայաստանը:**

**Հայերը կարճ ժամանակում հզորացրին ու մեծացրին իրենց բանակը: Դարեհ Առաջին թագավորը տեսնելով, որ Հայքը իրեն չի հնազանդվում՝ մեծ զորաբանակներ ուղարկեց հայերի դեմ:**

Այս բոլոր դեպքերի մասին մանրամասն պատմված է Դարեհի գրել տված արձանագրության մեջ, որի մասին արդեն խոսել ենք իններորդ զրույցում: Հիշենք. դա Բեհիսթունի արձանագրությունն է՝ փորագրված մի մեծ ժայռի հարթեցված երեսին: Դա նաև պարսից Աքեմենյան թագավորների առաջին արձանագրությունն է՝ գրված երեք լեզվով՝ հին պարսկերեն, ասուրաբաբելերեն և էլամերեն: Կրկին հիշենք, որ այս արձանագրության մեջ էլ հայը պարսկերեն կոչվում է **արմինիյա**, Հայաստանը՝ **Արմինա**, իսկ ասուրաբաբելերեն մասում՝ հայը՝ **ուրարտայա**, Հայաստանը **Ուրարտու**:

Իր այս արձանագրության մեջ Դարեհը մանրամասն պատմում է մոգ Գաումատայի ապստամբության և նրան ըսպանելու մասին, նաև՝ անհնազանդ երկրների դեմ իր զորավարների մղած պատերազմների վերաբերյալ: Ծատ է գրված Հայքի մասին: Պարզ երևում է, որ Դարեհին զայրացրել է հայերի անկախ դառնալը և իրեն չհնազանդվելը:

Դարեհը երկու մեծ զորաբանակ ուղարկեց հայերի դեմ՝ մեկը հայ Դադարշիշի, մյուսը՝ պարսիկ Վաումիսայի ղեկավարությամբ: Դադարշիշը Հայք է մըտել Մարաստանի կողմից, այսինքն՝ հարավ-արևելքից: Իսկ Վաումիսան իր զորքով նախ մտել է Միջագետք, քանի որ հայկական զորքը գրավել էր Միջագետքի մի զգալի մասը:

Այս զորավարները երկու կողմից հինգ արշավանք են կատարել հայերի դեմ, հինգ անգամ ճակատամարտ է տեղի ունեցել հայոց և պարսից զորքերի միջև:

Ահա մի հատված Դարեհի արձանագրությունից. «Դարեհ թագավորն ասում է. Դադարշիշ անունով հային՝ իմ ծառային, ուղարկեցի Հայք: Նրան այսպես պատվիրեցի. «Գնա՛ և ջախջախի՛ր այդ ապստամբ բանակը, որն ինձ չի հըպատակվում»: Դադարշիշը գնաց Հայքը նվաճելու: Երբ նա հասավ Հայք, ապըստամբները համախմբվեցին և դուրս եկան Դադարշիշի դեմ՝ ճակատամարտ տալու: Հայքում Զուզաք անունով մի ավան կա, ճակատամարտը տեղի ունեցավ այդտեղ»:

Սա եղել է մ. թ. ա. 521 թվականի մա-



Բեհիսթունի արձանագրությունը: Կենտրոնում՝ բարձրաքանդակներ: Դարեհ թագավորը՝ ձեռքը բարձրացրած, և նրա առջևում 9 պարտված թագավորները (որոնցից մեկը Արաքան է): Բարձրաքանդակի երեք կողմերում արձանագրությունն է:

յիսի 21-ին: Հայկական և պարսկական զորքերի միջև երկրորդ ճակատամարտը տեղի ունեցավ տասը օր հետո, հայոց Տիգրա բերդի մոտ: Երրորդ անգամ Դադարշիշի զորքը հայոց զորքի հետ ընդհարվեց մոտ քսան օր հետո (հունիսի 21-ին), հայոց Ույամա լեռան մոտ:

Դարեհը Արևելքի թագավորների գոռոզ ոճով ու ինքնագովությամբ գրել է, որ իբր երեք անգամ էլ Դադարշիշն է հաղթել, բայց պարզ երևում է, որ Դադարշիշի զորքերը պարտվել են: Եթե առաջին իսկ ճակատամարտում նրանք հաղթեին հայերին, էլ ինչո՞ւ պետք է երկրորդ, երրորդ ճակատամարտերը տային: Որ հայերը հաղթանակներ են տարել, իմանում ենք նաև այն բանից, որ Դարեհը մի քանի ամիս հետո նոր զորք է ուղարկում հայերի դեմ, այս անգամ պարսիկ Վաումիսայի ղեկավարությամբ: «Դարեհ թագավորն ասում է «Այնուհետև, Վաումիսա անունով պարսիկին՝ իմ ծառային, ես ուղարկեցի Հայք: Նրան այսպես պատվիրեցի. «Գնա՛, ջախջախի՛ր այդ ապստամբ բանակը, որն ինձ չի հնազանդվում»: Ուստի Վաումիսան գնաց Հայքը նվաճելու: Ապստամբները համախմբվեցին և դուրս եկան Վաումիսայի դեմ պատերազմի: Ասորեստանում Իզարա անունով մի վայր



Հայերը Պերսեպոլիսում մ. թ. ա. VI դար: (Պերսեպոլիսի բարձրաքանդակներից):




Պարսից Աքեմենյան կայսրությունը

կա: Ճակատամարտն այնտեղ տեղի ունեցավ»:

Դարեհը կրկին պարծենկոտությամբ գրում է, որ պարսկական զորքերը հաղթել են, բայց դա ևս անհավատալի է, քանի որ Վաումիսան շուտով մի նոր արշավանք է կատարում հայերի դեմ: Դարեհի այս գրածներից էլ իմանում ենք, նաև, որ հայկական զորքը Հայքում հաղթանակներ տանելով, մտել էր Միջագետք և Վաումիսայի զորքի հետ այնտեղ էլ ճակատամարտ է տվել:

Ապա Դարեհը գրում է, որ մի հայի ղեկավարությամբ Բաբելոնն է իր դեմ ապստամբել: Ահա. «Մի մարդ Արաքա անունով, հայ, Հալդիդայի որդի, Բաբելոնում ապստամբեց: Բաբելոնի երկրում Դուբալա անունով մի վայր կա. նա այնտեղ ապստամբեց»:

Արաքան հայերի առաջնորդներից է եղել՝ Բաբելոնում մեծ դիրքի հասած: Նա Միջագետք մտած հայկական զորքի և Միջագետքի հայկական բնակչության օգնությամբ գրավել է Բաբելոնը:

Հայերի այս մեծ հաջողությունները երկար չտևեցին: Արաքայի զորքը ի վերջո պարսիկներից պարտվեց: Ինքը՝ Արաքան, գերի ընկավ և դաժան մահապատժի ենթարկվեց: Նա հայ ժողովրդի հերոս զավակն էր, որ զոհվեց իր երկրի



Դարեհ I-ին թագավորը գահի վրա:

անկախության համար: Հնարավոր է, որ Արաքսան իրեն հռչակել էր Միջագետքի և հայոց թագավոր, և **Արաքս**, որ նույն **արքա** բառն է, երևի ոչ թե նրա անունն էր, այլ թագավորական տիտղոսը:

Վահումիսայի վերջին արշավանքը Հայքի դեմ, հավանաբար, նրան հաջողություն է բերել, թեև դա հաստատ չգիտենք: Ինչ էլ եղած լինի, մենք գիտենք, որ մ. թ. ա. 519 թվականին Հայքն արդեն կորցրել էր իր անկախությունը և Պարսկաստանի գերիշխանության տակ էր ընկել:

Դարեհը հաղթել էր նաև իր դեմ ելած մյուս ութ երկրների ապստամբներին և Պարսից ամբողջ կայսրությունը վերականգնել: Նվաճված երկրները Դարեհը բաժանեց նոր սատրապությունների: Հույն պատմիչ Հերոդոտը գրում է, որ Հայքը բաժանված էր երկու սատրապությունների միջև՝ արևելյան մասը 13-րդ սատրապությունն էր, արևմտյանը՝ 18-րդ սատրապությունը, որի մայրաքաղաքը Վանն էր, մյուսի վարչական կենտրոնն էր Էրևանը (Էրեբունին): Երկու սատրապությունները միասին մոտավորապես Մեծ Հայքի տարածքն էին կազմում. միայն արևելյան մասը՝ Կասպից ծովի մոտակայքը, անջատված ու միացված էր Մարաստանի սատրապությանը:

Հայքը մեծ հարկեր էր վճարում Պարսկաստանին և իր զորքերով մասնակցում էր պարսից թագավորների մղած պատերազմներին: Իսկ Երվանդունիների թագավորությունը Հայքում պահպանվում էր, թեև՝ Պարսկաստանից կախյալ վիճակում: Պարսկական մյուս թագավորների թողած եռալեզու արձանագրություններում Հայքը միշտ որպես մի միասնական երկիր է հիշվում, դարձյալ հին պարսկերեն՝ Արմինիա, ասուրաբաբելերեն՝ Ուրարտու (Ուրաշտու):

Պարսից Աքեմենյան թագավորները, շարժվելով դեպի արևմուտք, պատերազմ սկսեցին Հունաստանի դեմ: Հայկական զորքը դարձյալ մասնակցում էր այդ արշավանքներին:

Շուտով պարսիկները գրավեցին Թրակիան, և Պարսից Աքեմենյան հսկա կայսրությունը տարածվեց Բալկանյան թերակղզուց մինչև Հնդկաստան: Մայրաքաղաքն էր Պերսեպոլիսը: Արևելքում այսպիսի մեծ կայսրություն դեռևս չէր եղել:

(շարունակելի)



# Եթե ուզում ես..

Եթե ուզում ես ծովը տեսնել
Երազներիդ մեջ՝
Պատռիր փեշը ծովի
Ու քեզ մի պահ գտիր
Մարգարիտներ հաշվելիս...

Եթե ուզում ես երկնքի խորքից
Լսել աստվածամոր ձայնը,
Հավատա լույսին
Ու պաշտիր նրան,
Ինչպես արմատը՝ հողին...

Եթե երազում ես լույսի միջից
բառեր հանել
Ու խոսել այդ բառերով,
Սիրիր լեզուդ
Որ օծվել է լույսի մաքրությամբ...

Եթե ուզում ես մոտիկից
Նայել արևին՝
Նայիր մորդ ու ջերմացիր:
Ու ջերմացրու քո խոսքերը
Մորդ փարվող...

Նկարները՝ ԳՆԵԼ ՄԻԼԻՏՈՆՅԱՆԻ, 9 տ.
Երևան





Երազանքը պատված ցողունով
Վեր է բարձրանում՝
Գտնելու պտուղը հույսի,
Եվ առէջներում բույն դնելով
Տեղավորվում է՝
Գտնելու ճիչն իր թաքնված,
Նրանով վառվելու,
Նորից ծնվելու համար,
Ու ճամփա ընկնելու նորից...




# Պսակադրություն

Լույսը թափանցում է
Ծաղկաթերթերի մեջ
Ու շիկնում տված
Համբույրի համար...

Իսկ հետո խավարի մեջ
Լուսամուտիս ծաղիկները
Իրենք կհամբուրեն լույսին,
Ու երազները կնետեն երկինք՝
պսակադրության
աստղերի հետ...

ՍԵՅՐԱՆ ԿԱՐՍՅԱՆ
ք. Էջմիածին, № 10 միջն. դպրոց, 7-րդ դաս.





# ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՅԲՈՒԲԵՆ

Այս բաժինը, որ բացել ենք ամսագրում, կարծես փոքր-ինչ արտասովոր է: Հենց թեկուզ այն, որ կարդացիր «այբուբեն» ու զարմացար երևի...

Այո, իհարկե, այբուբեն: Այսինքն՝ ակիզբը, հիմնականը և կարևորը այն բոլոր գիտելիքներից, որին չտիրապետելու դեպքում անհնար է որևէ առաջադիմություն: Բարոյականության այբուբենը տիրապետելու դեպքում է, որ հնարավոր է դառնալ իսկական, լիարժեք կամ, ինչպես սովորաբար ասում են՝ մեծատառով մարդ:

Մեր այս նոր բաժնի փոքրիկ զրույցները կամ պատմվածքները ընթերցելով, դու այնպիսի գիտելիքներ կստանաս, որոնք քեզ կօգնեն ստուգել մարդկանց, նրանց արարքները ըմբռնելու քո կարողության սահմանները, կսովորեցնեն հասկանալ կյանքի ամենատարբեր իրադրությունները ու վիճակները:

Չկարծես, սակայն, թե մտադիր ենք պատրաստի դեղատոմսեր տալ քեզ: Կյանքում պատրաստի դեղատոմսեր չեն լինում: Բայց դու պետք է սովորես ու ըմբռնես, որ մարդու բարոյական բարձրագույն արժեքը նրա խոսքի ու գործի միասնությունն է:

Դու պետք է նաև իմանաս, որ մեր զրույցներից ստացած գիտելիքները պետք է քեզ օգնեն դառնալու գործունյա մարդ, նախաձեռնող ու պատասխանատվության զգացում ունեցող քաղաքացի:

Իսկ դա նշանակում է, որ չպետք է լինես անտարբեր, չպետք է հանդուրժես վատն ու չարը: Եվ ամենից առաջ պարտավոր ես ինքդ քեզ հարցնել. «Արդյո՞ք ճիշտ եմ վարվում»: Անշուշտ, դյուրին բան չէ միշտ ճիշտ վարվել: Բայց դրա համար անհրաժեշտ է, որ ինքդ քեզ դաստիարակես բարոյական հատկություններով ու կոփես քո կամքը:

Մեր «Բարոյականության այբուբենը» այդ առումով քեզ անպայման օգտակար կլինի:

Ուրեմն, մենք հաջողություն ենք մաղթում քեզ շատ դժվարին՝ մարդ դառնալու գիտությանը տիրապետելու գործում:

Եվ սպասում ենք, որ դու կարձագանքես «Բարոյականության «այբուբենին», անձամբ քեզ հետ կատարված դեպքերի սեփական մեկնաբանությամբ:

## Աշխատասիրություն

Յոթերորդ դասարանցի մի տղա նամակ էր ուղարկել խմբագրություն: Նամակն այն մասին էր, որ ինքը շատ է ուզում կոմբայնավար դառնալ, իսկ ուսուցչուհին ծաղրում է իրեն, կոչելով «կոլտնտեսական»: **«Չգիտեմ ինչպես ը-**

րականացնել երազանքս»,— գրում էր նա: Այդ տղայի նամակին խմբագրությունը խնդրել էր պատասխանել հանրաճանաչ գրող ու բեմադրիչ Վասիլի Շուկշինին, որն ինքն էլ գյուղում էր ապրել և առանձնապես չէր սիրում վեհ ու գեղեցիկ արտահայտություններ գործածել:

«Ես ուզում եմ սկսել երազանքից: Ու հավանաբար, հենց այս պահից էլ կսկըսեն մեր տարաձայնությունները, քանզի ես բնավ չեմ սիրում երազել: Իսկ դու նույնիսկ մի քիչ էլ պարծենում ես քո երազանքով, և ես խոսքերիդ մեջ գրեթե սպառնալիք եմ տեսնում: Կարծես թե ուզում ես ասել. «Ա՛յ, կդադարեմ երազել»: Ինչևէ, դու երազում ես, իսկ ես արդեն շատ վաղուց է, որ չեմ երազում: Անշուշտ, երկուսս էլ արդարանալու հիմքեր ունենք: Դու դեռ նոր-նոր ես կյանք մտնում, իսկ ես արդեն բավական ժամանակ է, որ ապրում եմ այս կյանքում: Բայց խնդիրն այն է, թե մենք կկարողանա՞նք արդյոք իրար հասկանալ: Ըստ իս, եթե ուզենանք՝ կկարողանանք: Ես ամենևին էլ չեմ ուզում, որ կորցնես երազելու ընդունակությունդ, պարզապես շատ կուզենայի հավատացնել քեզ, որ նպատակիդ կհասնես միայն ու միայն գիտակցությանդ ու աշխատանքիդ շընորհիվ: Գիտեմ, այս բառերը լսում ես արդեն հարյուրերորդ անգամ ու հիմա ծոմռում ես դեմքդ, բայց վստահ եղիր, որ ավելի ճշմարիտ բան, քան բանականությունն ու աշխատասիրությունն են՝ չկա: Խոսքերը մեղավոր չեն, անշուշտ, որ իրենք չափազանց հաճախ, իսկ երբեմն էլ նույնիսկ անտեղի են գործածվում, դրանք իրենց հավիտենականությամբ են ճշմարտացի: Իսկ այն, որ աշխարհում ամենահզոր ու զորավոր ուժերը բանականությունն ու աշխատասիրությունն են, վստահեցնում եմ իմ իսկ անձնական փորձով: Դու իրավունք ունես մտածելու, որ միշտ չէ, երբ աշխատասեր ու գիտակից անհատականությունն իրեն լավ է զգում, որովհետև քո միջավայրում հասցրել ես նաև տեսնել այդպիսիներին, բայց հավատացած եղիր, որ այն լավն ու գեղեցիկը, որ երբևէ ստեղծվել է մեր կյանքում, ստեղծել են բանական, տաղանդավոր ու աշխատասեր մարդիկ: Մարդկության ողջ պատմության ընթացքում դեռևս չկա մի արժեքավոր, բան, որ մակաբույծը ստեղծած լինի: Ես չեմ հերքում, որ երազելն անհրաժեշտ է, սակայն հավատում եմ միմիայն աշխատանքին: Երազանքը երազանք է, իսկ երբ վարպետը որևէ գործ է նախաձեռնում, և նրա ձեռքերը կարող են գեղեցիկ, ճշմարիտ ու խելացի աշխատել, հավատա, որ ավելի արժե, քան պարապ տեղը երազելը: Եվ հետո ես չեմ վստահում գեղեցիկ բառերին: Իսկ երազանքը չափազանց գեղեցիկ է հընչում: Նաև՝ գեղեցիկ բառերը, որ չափից շատ են ասվել: Ուրեմն՝ այժմ հարկավոր է գեղեցիկ գործել: Ուսուցչուհուցդ էլ մի վիրավորվիր: Նա էլ է սխալվում, որովհետև դեռևս չի հասցրել ամեն ինչ հասկանալ: Նա և պարտավոր չէ ամեն ինչ իմանալու: Եվ, ընդհանրապես, աշխատիր քիչ վիրավորվել մարդկանցից և մի հուսահատվիր: Դու ինքդ ես քո ճակատագրի տերը: (Տեսնո՞ւմ ես, ես էլ եմ կարողանում, այնուամենայնիվ, գեղեցիկ խոսել, և այդպես խոսելն ավելի դյուրին է, ցավոք սրտի): Ուրիշներից, կարեցածիդ չափ, շատ գիտցիր, շատ աշխատիր, սա է քո ճակատագիրը: Դժվար է, իհարկե: Ինչ էլ դառնաս՝ կոմբայնավար, ակադեմիկոս թե նկարիչ, ապրիր և քեզ անմնացորդ նվիրիր այդ մասնագիտությանը, ձգտիր շատ գիտենալ, մի դժգոհիր ու նախանձիր, խղճիդ դեմ մի գնա: Աշխատիր բարի ու մեծահոգի լինել և այն ժամանակ ինքդ նախանձելի ճակատագիր կունենաս: Իսկ երբ այդպիսին դառնաս, օգնիր նաև ուրիշներին: Ես գիտեմ, թե դա որքան դժվար է: Ինչպես երևում է, ինքս էլ սկսեցի երազել... Շատ կուզենայի, որ դու հենց այդպես էլ ապրեիր: Նախանձում եմ քեզ, քո տարիքին (սա ներելի է), դու նոր ես սկըսում, և շատ հնարավոր է, որ լավ ես սկսում, համենայն դեպս՝ հնարավորություն ունես լավ սկսելու, որովհետև ապրելու մի ամբողջ կյանք ունես դեռևս: Շատ բանի կարելի է հասնել այսպիսի հնարավորության դեպքում: Իսկ ամենակարևորն այն է, որ պետք է շատ կարդաս: Աշխատիր չծխել: Մի ձգտիր մտերմանալ նրանց հետ, ովքեր վաղ են սկսել ծխել: Հիշիր, որ դու դեռ շատ բան պետք է հասցնես անել քո ժողովրդի համար: Եվ այն ամենն, ինչ կխանգարի քեզ՝ գինին և ծխախոտը, ծուլությունն ու չափից դուրս պատվասիրությունը, հեռու վանիր: Վ. ՇՈՒԿՇԻՆ»:

Թարգմանությունը՝ ՆՎԱՐԴ ՍԻՄՈՆՅԱՆԻ



# ՌՈԲԵՐՏ ԷՄՄԻՅԱՆ

Ռոբերտ Էմմիյանը իր մարզիչ թեթևատլետիկայի երկրի հավաքականի [illegible] հեռացատկորդ Իգոր Տեր-Հովհաննիսյանի հետ:

1986 թվականի հուլիսի 6-ը ընդմիշտ կմնա հեռացատկի Եվրոպայի չեմպիոն ու ռեկորդակիր, միջազգային կարգի սպորտի վարպետ, լենինականցի քսանմեկամյա թեթևատլետ Ռոբերտ Էմմիյանի հիշողության մեջ: Չէ՞ որ այդ հիշարժան օրը Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվան կենտրոնական մարզադաշտում անցկացվող բարի կամքի միջազգային խաղերում նա նվաճեց 8 մետր 61 սանտիմետր բարձունքը, ամբողջ 20 սանտիմետր ետ թողնելով ամերիկացի մարզիկ Լարի Միրիքսին:

— «Լուժնիկի»-ում իմ առաջին արդյունքը 8 մ. 22 սմ. էր, Միրիքսն անմիջապես կրկնեց այդ ցուցանիշը,— վերհիշում է անվանի մարզիկը,— իսկ երբ լուսատախտակի վրա իմ երկրորդ ցատկը գրանցվեց՝ 8 մ. 61 սմ., ամերիկացին փորձեց ինձ «ձեռնոց նետել», սակայն կարողացավ ցույց տալ միայն 8 մ. 41 սմ. արդյունք և բավարարվել երկրորդ տեղով:

Այդ հաջողության մեջ «մեղքի» իրենց բաժինն ունեն Ռոբերտի մարզիչները՝ ՀՍՍՀ վաստակավոր մարզիչներ Մկրտիչ Կարապետյանն ու Հայաստանի թեթև ատլետիկայի հավաքականի ավագ մարզիչ Վարդան Հովսեփյանը: Ռոբերտին բարի խորհուրդներով և իր մեծ փորձով օգնում է նաև ՍՍՀՄ թեթև ատլետիկայի հավաքականի ավագ մարզիչ, փառաբանված հեռացատկորդ Իգոր Տեր-Հովհաննիսյանը:

— Երբ 1968 թվականին Մեխիկոյում անցկացված օլիմպիական խաղերում ամերիկացի նշանավոր թեթևատլետ Ռոբերտ Բիմոնը կատարեց աներևակայելի ցատկ՝ 8 մ. 90 սմ., մասնագետներն այն անվանեցին «ցատկ դեպի 21-րդ դար», շարունակում է Ռոբերտը,— իսկ Իգոր Տեր-Հովհաննիսյանը իր «Երկրի վրայով սավառնողները» գրքում գրեց, որ Բիմոնի ռեկորդը կարող են գերազանցել ավելի շուտ, քան կարծում ենք. այդ կարող են անել ամերիկացի երկու հեռացատկորդները՝ Կարլ Լյուիսը և Լարի Միրիքսը: Անշուշտ, լեգենդար Բիմոնի այս երկու հայրենակիցները 8 մ. 90 սմ.-ին մոտենալու բազմաթիվ փորձեր են արել: Լյուիսին նույնիսկ հաջողվել է ցույց տալ 8 մ. 74 սմ. արդյունք, ընդհուպ մոտենալով «դարի ռեկորդին»:

Մինչև մոսկովյան հիշարժան օրը Ռոբերտը հանդես է եկել բազմաթիվ համամիութենական և միջազգային ստուգատեսներում, ամեն անգամ տուն վերադարձել հաղթողի՝ ժպիտը դեմքին: Ա-



Ծանրաձողով կքանստումները թեթևատլետների համար և պարտադիր վարժություններից են: Բայց երբ այդ մարզաձևում քո մարզիչն է աշխարհահռչակ լենինականցին՝ ծանրամարտի աշխարհի և օլիմպիական խաղերի բազմակի չեմպիոն Յուրի Վարդանյանը, հաջողվում է օգտակարը զուգակցել հաճելիի հետ:

րևմտագերմանական Շտուտգարդտ քաղաքում Եվրոպայի չեմպիոնի ոսկե մեդալը նվաճելուց հետո նա տուն վերադարձավ և անմիջապես մեկնեց Տաշքենդ, որտեղ հիանալի հանդես եկավ ներկայացուցչական փառատոնում՝ ՍՍՀՄ ժողովուրդների ամառային իններորդ սպարտակիադայում: Եվ նորից հաղթանակ՝ 8 մետր 37 սանտիմետր:

— Իմ հաջողությունների հիմքը դրվել է դեռևս դպրոցում,— ասում է Ռոբերտը,— ավարտել եմ Լենինականի Մեսրոպ Մաշտոցի անվան № 29 դպրոցը: Հինգերորդ դասարանից արդեն պարապում էի սպորտով: Այսօր երախտագիտությամբ եմ հիշում ֆիզկուլտուրայի իմ ուսուցչին՝ Խորեն Հովելյանին, որը դեռ փոքր հասակից իմ մեջ սեր արթնացրեց դեպի մեծ սպորտը: Մասնակցում էի թեթև ատլետիկայի խմբակի պարապմունքներին: Ընկեր Հովելյանը միշտ էլ գոհ էր. այդ տարիներին թեթև ատլետիկայի մեր դպրոցական թիմը հաճախ էր հաղթող ճանաչվում թե՛ դպրոցական և թե՛ քաղաքային մրցումներում: Իմ սիրելի ուսուցչի հոգատար և բարեխիղճ աշխատանքի արժեքն այսօր ավելի շատ եմ զգում: Չէ՞ որ ներկա բոլոր ցուցանիշներիս հիմքը, ինչպես՝ քիչ առաջ ասացի, դրվել է հենց դպրոցում: Եվ այսօր համոզված կարող եմ ասել. եթե որևէ մեկը ցանկություն ունի լավ մարզիկ դառնալ, պետք է սպորտով զբաղվի դեռևս դպրոցական տարիներից: Միայն այդ դեպքում կարող է մեծ հաջողության հասնել: Ինձ օգնել է նաև մայրս, որն անցյալում եղել է Լենինականի բասկետբոլի հավաքականի խաղացող և այսօր լավ է հասկանում ինձ:

Սիրում եմ սպորտը, չէ՞ որ այն ինձ պարգևում է առողջություն, առույգություն, տարբեր երկրների ու մայրցամաքների մարդկանց հետ շփվելու հնարավորություն, հաղթանակի բերկրանք, որը ոչ մի բանի հետ չես կարող համեմատել: Սպորտը միավորում է շատ երկրների և ժողովուրդների ներկայացուցիչների, նպաստում խաղաղության և բարեկամական կապերի ամրապնդմանը:

Սպորտում Ռոբերտի մտերիմներն են փառաբանված ծանրորդ Յուրի Վարդանյանը, հեռացատկի ու բարձրացատկի աշխարհի ռեկորդակիր Թամարա Բիկովան, ինչպես նաև Ռոբերտի համքաղաքացի, ճանաչված թեթևատլետ Հովհաննես Ստեփանյանը:

Ռոբերտին նվիրած իր լուսանկարի ընծայագրում Յուրի Վարդանյանը գրել

է. «Սիրելի Ռոբերտ, ցանկանում եմ քեզ տեսնել սպորտի ամենաբարձր գագաթին կանգնած»: Եվ Ռոբերտը ժպտում է.

— Այսօր, ինչ խոսք, շատ կուզենայի, որ նրա այս խոսքերը իրականանային: Չէ՞ որ նա, այսպես ասած, լենինականյան էստաֆետը հանձնել է ինձ և պատվիրել բարձր պահել ոչ միայն Լենինականի և մեր ժողովրդի, այլև ընդհանրապես Սովետական Միության պատիվը: Մի շատ պատասխանատու և լուրջ պատվիրան է դա: Կաշխատեմ այսուհետև էլ հավատարիմ մնալ Յուրիի բարի ավանդներին:

Լենինականում երեխաները սիրում են ծանրամարտը: Փառաբանված ծանրորդներ Յուրի Վարդանյանն ու Վարդան Միլիտոսյանը նրանց կուռքերն են դարձել: Սիրում են նաև ըմբշամարտիկ Լևոն Ջուլֆալաքյանին, բռնցքամարտիկ Մեխակ Ղազարյանին: Այսօր ուրախությամբ կարելի է ասել, որ բազմաթիվ պատանիներ ու աղջիկներ արդեն մարզվում են նաև թեթև ատլետիկայով: Նրանց դեպի այդ սպորտաձևն է ձգել Էմինյանի օրինակը: Մարզադաշտում նրանք մոտենում են Ռոբերտին, դիմում այս կամ այն հարցով, խորհրդակցում նրա հետ: Եվ ամեն անգամ անվանի մարզիկն աշխատում է որքան հնարավոր է ոգևորել ու քաջալերել:

— Իսկ ի՞նչ ծրագրեր ունեք 1987 թվականին,— դիմում եմ նրան:

— Ո՞վ գիտի, գուցե ինձ հաջողվի գերազանցել ամերիկացի նեգր թեթևատլետ Կարլ Լյուիսին պատկանող համաշխարհային մեկ այլ ռեկորդը՝ 8 մետր 74 սանտիմետրը: Լեգենդար Բիմոնից հետո նա երկրորդ ուժեղագույն հեռացատկորդն է աշխարհում: Սեպտեմբերին առաջին անգամ կմասնակցեմ աշխարհի առաջնությանը, որն անցկացվելու է Հռոմում: Ցանկանում եմ մասնակցել նաև Հարավսլավիայում անցկացվելիք ունիվերսիադային:

— Վերջում կուզենայի «Պիոներ» ամսագրի բազմահազար ընթերցողների անունից շնորհավորել ձեզ՝ Հայաստանի 1986 թվականի № 1 մարզիկ ճանաչվելու համար:

— Շնորհակալություն: Իմ պատանի բարեկամների մեծ վստահությունն ու անկեղծ սերը միշտ էլ ուղեկցել ու ոգևորել են ինձ մրցույթների մեկնելիս:

**ՍԱՐՈ ԳՅՈԴԱԿՅԱՆ**



## ԺՊԻՏՆԵՐ

- Զարմանալի է, թե որքան դժվար է դատարկ գլուխներում արձագանք առաջացնելը:
- Օտար լեզու չիմանալով, դու երբեք չես հասկանա օտարերկրացու լռությունը:
- Հիշիր, մարդն այլ ընտրություն չունի. նա պետք է մարդ լինի:
- Սեզա՛մ, բացվի՛ր— ես ուզում եմ դուրս գալ:
- Քանդելով հուշարձանները, պատվանդանները պահպանեցեք: Դրանք կարող են պետք գալ:
- Նախընտրում եմ «Մուտքն արգելված է» մակագրությունը, քան թե՝ «Ելք չկա»...
- Մտքերը, ինչպես լվերը, անցնում են մի մարդուց մյուսին: Սակայն բոլորին չէ, որ կծում են:
- Ախ, եթե քավության նոխազին էլ կարելի լիներ կթել:
- Ոմն վարժեցնող, երկար տարիներ աշխատելով, ձկանը սովորեցրեց ապրել ցամաքում: Բայց մի անգամ նկատեց, որ նա խեղդվում է ջրափոսում:
- Մի հավատա երազներին, բացառությամբ այն դեպքերի, երբ դրանք կատարվում են:
- Ժամացույցներն էլ են իզուր ժամանակ վատնում, երբ չեն աշխատում:
- Մի բան է՝ ձեռնոց նետելը, մեկ այլ բան՝ դեն շպրտելը:
- Որքան ուժեղ ես մաթեմատիկայից, նույնքան շատ են չլուծվող խնդիրները:






1. Հակոբիկը մի օր հայտարարեց, որ հաստատապես կարող է գուշակել հանրահայտ Մարադոնայի մասնակցությամբ ցանկացած ֆուտբոլային խաղի հաշիվը՝ մինչև հանդիպումն սկսվելը:

Կարո՞ղ եք ասել, ո՞րն է Հակոբիկի գաղտնիքը:



2. Կարո՞ղ եք կարդալ հիերոգլիֆները:

3. Այս նախադասության անդամներն առանձնացված են երեք ուղիղ գծերով: Փորձեք նույնն անել միայն երկու ուղիղ գծի օգնությամբ:




Առաջարկները՝ ՌՈՒԲԵՆ ՍԻՐՈՒՆՅԱՆԻ

«ՊԻՈՆԵՐ» № 3-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Թագավորը միտումնավոր կերպով իր որդիներին այնպիսի սերմեր էր բաժանել, որոնք վաղուց արդեն ընդունակ չէին ծլելու: Եվ միայն որդիներից մեկն ազնիվ գտնվեց, ասելով, որ իրեն տված սերմերից ոչ մեկը, որքան էլ ինքը ջանացել է, չի ծլարձակել:

Այդպես թագավորը գտավ իր ամենաազնիվ որդուն, որի սրտում ապրում էր ազնվության ծաղիկը: Ուստի՝ նրան էլ թագաժառանգ հռչակեց:

Աշխարհի ամենագեղեցիկ ծաղիկն էլ, իհարկե, ազնվության ծաղիկն է: Հեքիաթըն այդպես էլ պետք է վերնագրել՝ «Ազնվության ծաղիկը»:

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐճ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՇՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.:

